

# Ճամբարում

ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

**Երբ արևն է զարթնում քնից**
**Ծեփորների կանչով զուլալ,**
**Մեր ճամբարի վրա նորից**
**Բարձրանում է դրոշը ալ:**
**Մեզ կանչում է մի զով ջրվեժ,**
**Լողանում ենք պարզ գետակում,**
**Մեզ այրում է արևը թեժ,**
**Ու քամիներն են մեզ կոփում:**
**Իսկ երբ մութը իջնում է ցած,**
**Խարույկներն են երկինք հասնում,**
**Հազար կանչով, ծափով լցված՝**
**Մեր հանդեսներն են սկսվում:**
**Եվ ցոլքի տակ վառ աստղերի,**
**Արդեն երգից, պարից հոգնած՝**
**Բազմալեզու մեր ճամբարի**
**Դրոշներն ենք իջեցնում ցած:**



Մեր ընտանիքը ապրում էր ավելի քան համեստ, ամռան շոգերին քաղաքից հեռու՝ օդափոխության ձևալը մեր կենցաղի մեջ չկար· գուցե դրանից էր, որ ճամբարը ինձ համար երազ էր, անսահման մի ուրախություն:

Պետք է ասել, որ այն տարիների ճամբարն էլ իսկապես ճամբար էր: Ապրում էինք մարդկանցից հեռու, անտառի խորքում ընկած բացատի մեջ, և որ գլխավորն է՝ վրաններում: Ոչ պակաս հետաքրքիր ւր նաև մեր «ճաշարանը»: Գետնին փորված էին քառանկյուն խրամատներ: Նստում էինք խրամատի թմբին, ոտներս կախում խրամատի մեջ, իսկ դիմացի թումբն էլ՝ սեղանն էր: Աստված իմ, ի՜նչ ախորժակով էինք ուտում մետաղյա թասերով մեզ բաժանված ապուրը, կարտոֆիլն ու կաթնովը, սև խըմոր հացի բուրումնավետ կտորը:

Երեսնական թվականների ըսկիզբն էր, ես նոր-նոր սկսել էի ոտանավորներ գրել, սակայն «հույժ ընդհատակյա» պայմաններում: Քաղաքի մեր մեկ սենյակը՝ գետնահարկ ու փոքրիկ, որտեղ ապրում էինք ամբողջ ընտանիքով, այսպիսի մի ընդհատակի հարմարեցված չէր, իհարկե: Ահա թե ինչու ուզում էի այդ նպատակի համար լրիվ բեռնվածությամբ օգտագործել Ծաղկաձորի անտառները: Նախաճաշից հետո, երբ ճամբարի մյուս պիոներները գնում էին Թթու ջուր կամ բարձրանում Ալիբեկ, ոմանք էլ զբաղվում էին խաղ ու սպորտով,— ես՝ տետրակս առած, քաշվում էի անտառի մի մենավոր

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ՍԻՐԵԼԻ ՕՐԵՐ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

անկյուն և ինքս ինձ ներշնչում էի... Ներշնչվե՜լ. չէ՞ որ գրքերում այդպես է՝ բանաստեղծները ներշնչվում են գրելու համար: Բանաստեղծները միշտ տխուր են, դալուկ, նիհար, ոչինչ չեն ուտում... Ավա՜ղ, օրորոցից սկսած՝ բնությունը ինձ տվել էր անխափան մի գիրություն, որը, ի դեպ, ամբողջ կյանքումս այլեվըս ետ չվերցրեց... Տվել էր նաև պինդ ու առողջ հոգի, այնպես որ իմ բոլոր ջանքերը՝ տխրել, վերանալ աշխարհից, սուզվել եթերային ցնորքների մեջ,— ապարդյուն էին անցնում: Տխրելս չէր գալիս, իսկ ուշք ու միտքս էլ անընդհատ ճամբարի կողմն էր— ճաշի զանգը բաց չթողնե՞մ հանկարծ...

Ահա այսպիսի մի ժամի, երբ ես իմ հերթական տվայտանքների մեջ էի, եկան ինձ կանչեցին, թե՝ պետք է կինոյում նկարահանվենք: Վերադարձա ճամբար, թևիս տակ թաքցրած տետրակս, թեև երևի պիտի ուզեի, որ կինոապարատը անմահացներ իմ այս բանաստեղծական վերացումները: Ի՜նչ բանաստեղծական վերացումներ. նստեցրին ինձ մեր հողաշեն նստարանին, ձեռքս տվին ապուրով լի թասը, հացն ու գդալը և հրահանգեցին ուտել որքան կարող եմ «ներշնչված»...

Ինչ խոսք, որ ֆիլմի ռեժիսոր Լևոն Քալանթարի այս հատուկ ուշադրության շարժառիթը իմ խեղճ տետրակը չէր, այլ համապատասխան արտաքինս, որը, ըստ հեղինակների մտահղացման, պետք է դիտվեր որպես արդյունք ճամբարում գոյություն ունեցող առատ սննդի, մաքուր օդ ու արևի:

Մի քանի ամիս հետո Երևանում ես բախտ ունեցա դիտելու այդ վավերագրական նկարը, որը կոչվում էր «Միշտ պատրաստ»: Էկրանի վրա, խոշոր պլանով նստել էի՝ հաստլիկ ոտքերս կախած խրամատի մեջ և արագ ու ախորժակով խպշտում էի ապուրը՝ ցուցադրելով ուտելիքից ավելի տռուզ դարձած այտերս...Ա՜յս էլ քեզ բանաստեղծական դալկություն ու մելամաղձոտություն... Հուսահատությունս անսահման էր՝ գոնե մի քիչ դանդա՜ղ ուտեի...

Ես չգիտեմ, Հայֆիլմի ֆիլմադարաններում պահպանվե՞լ է արդյոք այս նկարը: Եթե պահպանվել է, ի՜նչ հաճույքով պիտի դիտեի այս ամենը տարիների հեռուներից: Տարիների, որոնք, ավա՜ղ, պետք եղածից ավելի բերեցին ինձ տխրություն, ստիպելով, որ միշտ սիրով ու քնքշությամբ հիշեմ իմ մանկության, հատկապես ճամբարային կյանքի ուրախ, առողջ ու սիրելի օրերը:





րբ վանդակների մոտակայքում հանկարծակի սկսված մարդկային խոսակցությունները պարզորոշ դարձան ու ձայների մեջ զանազանվեց վաղուց ծանոթ հաստ և հրամայող տոնը, «Սև բաշը» հասկացավ, որ առյուծներին նորից են տանում ներկայացման: Ելույթը միշտ այդպես էր սկսվում: Նույնիսկ մոտեցող մարդկանց քանակը հաշվված էր լինում, հինգ-վեց հոգի: Հրամայող տոնով խոսողը կանգնում էր, ձեռքերը թափահարելով ինչ-որ բան ասում, մնացածները պատրաստակամ ցրվում էին և պատրաստվում վանդակը հրելու դեպի բեմ:

Վանդակը հրեցին: Ժամանակն էր սկսելու կրկեսային հայտնի կոլեկտիվի կիրակնօրյա երեկոյան ներկայացման առյուծների խմբի ելույթը: «Սև բաշը», որ մինչ այդ ննջում էր, աչքերը չբացեց: Նա միայն մտքում քմծիծաղեց այն առյուծների վրա, որոնք բարձրացել էին տեղներից և ցանկանում էին գուշակություններ անել: Նրանք շատ հետո, երբ իր նման ծերանան, գուցե իմանան, թե ինչումն է բանը: Թե ինչո՞ւ երբեմն իրենց սովորականի նման չեն կերակրում և ինչո՞ւ է վարժեցնողը հատկապես այդ օրերին սիրալիր լինում: «Սև բաշի» համար ամենից ատելի օրը այս երկու ներկայացման օրն էր, որի մասին հազիվ մոռացած ես լինում՝ նորից է կրկնվում: Մի՞թե զայրանալու չէ, որ ճաղերով շրջափակված բեմում, հանդիսականների բացականչությունների ու ծափերի տակ ելույթ ունենալուց հետո, կուշտ չեն կերակրում: Առյուծները մնում են կիսաքաղց, անհանգիստ, կարգին չեն կարողանում ննջել կամ մի քանի քայլ գցել: Մի քանի քայլ, վանդակի մի ծայրից մյուսը, և այն էլ՝ սողունի զգուշությամբ, որպեսզի չտրորես մյուսներին:

«Սև բաշը» գիտեր, որ առյուծները կամաց-կամաց գլխի են ընկնում, որ իրենց տանում են նոր ներկայացման: Եվ հասկանում են, որ սա երբեմն կրկնվող այն վատ օրն է, երբ երկրորդ ելույթից հետո գոնե կուշտ կլինեն: Դրանից նրա զայրույթը ավելացավ: Նրա դիմագծերը փոխվեցին, դեմքը մռայլվեց: Մռութը ավելի կնճռոտվեց, թարթիչները ավելի ցածրացան և հեռվից նայողին կթվար, թե «Սև բաշը» ամբողջ գիշեր ինչ-որ ցավից չի քնել:

Մեկ էլ նա տեսավ փոքրիկ սևազգեստ աղջկան: Նա կանգնած էր հենց այնտեղ, որտեղ կանգնեցրին վանդակները և որտեղից իրենց բեմ պետք է քշեին: «Սև բաշը» փոքրիկին չէր սիրում, չնայած վատ մտադրություն չուներ նրա նկատմամբ: Ընդհակառակը, սկզբում ինքը շատ էր սիրում այդ աղջկան և շնորհակալությամբ էր վերցնում նրա տված միս պատառիկները: Մարդուկ աղջնակը թույլ էր, անօգնական, իր նորածին կորյունների նման:

Փոքրիկը վարժեցնողի աղջիկն էր: Նա երկար մազեր ուներ և քնքուշ դիմագծեր, և «Սև բաշը» կարծում էր, թե աղջիկը ուրիշ տեսակի մարդ է, և մեծանալուց հետո նման չի լինի վարժեցնողին: Նա

# «ՍԵՎ ԲԱՇ» ԱՌՅՈՒԾԻ ԿԻՐԱԿՆՕՐՅԱ ԵԼՈՒՅԹԸ

*ՌՈՒԲԵՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*

դրանում համոզված էր: Բայց առյուծը նրան մի օր տեսավ սև զգեստով, կարճ մտրակը ձեռքին, ու ամեն ինչ հասկացավ: Նա չարաչար սխալվել էր: Աղջկա աչքերն էլ այդ օրը ուրիշ տեսակ էին՝ իշխող, սպառնացող, հրամայող: Այդ պահին տարօրինակ բան կատարվեց «Սև բաշի» հետ: Մտքերը չխառնվեցին և ներսում ոչինչ չգալարվեց: Միայն մտքերի մի մասը, որպես լեռնային ձնահյուս, ցած սահեց: Հետո անգիտակից բռնկումով ճաղերի արանքից մռլտաց աղջկա վրա, աչքերը բոց ժայթքեցին, իսկ աղջիկը վախից մի քանի քայլ ետ-ետ գնաց: Առյուծը հասկացավ, որ փոքրիկ աղջնակը նույնպես միտք ունի տիրելու առյուծներին և մսի պատառիկներով շլացնելու նրանց: Բայց «Սև բաշը» գիտեր (ու մտքում էլ երդվեց), որ ինքը երբեք այդ փոքրիկին չի հնազանդվի:

«Սև բաշը» նկատեց վանդակին մոտեցող երկաթե ձողերը, որոնցով սովորաբար գազաններին դուրս էին քշում բեմ: «Կարծես վանդակը մեր ծննդավայրն է»,— մտածեց նա: Առյուծները ծուլորեն, իրենց բզող երկաթաձողերից խույս տալով՝ հերթով բեմ էին ելնում: Նրանք քայլում էին միօրինակ, ետնամասերը տարուբերելով, կարծես ուժգին, գետնահար քամին նրանց հարվածում է մեկ այս, մեկ այն կողմից: Քիչ հետո, երբ բոլորը տեղավորվել էին բեմում, ելույթը սկսվեց: Վարժեցնողը հրավիրեց մի առյուծի, և սա, փոքր-ինչ ուշացումով, տեղից վեր ցատկեց և նստեց ուրիշ, ավելի հեռու դրված սեղանիկի վրա: Հետո վարժեցնողը հրավիրեց մեկ ուրիշ առյուծի: Սա սեղանիկից ցած իջավ և սկսեց բարձրանալ ափսեի մեծության կլոր, կարմիր ներկված աստիճաններով, որպեսզի անցնի մի քանի մետր բարձր, երկու իրար զուգահեռ, պիրկ ձգված պարանների վրայով:

Նարնջագույն շորեր հագած տղաները, որոնք կրկեսում օժանդակ աշխատանք էին կատարում, զգուշության համար ձողերը ցցեցին բեմը զատող ճաղերի կլոր շրջանակի վերևի մասերում՝ պարանը պահող երկաթե սյուներին մոտիկ: Բայց առյուծը ճաղերից այն կողմ ցատկելու մտադրություն չուներ: Նա պարանի վրա դրեց նախ աջ թաթը, ապա ձախը, և գլուխը մի փոքր առաջ մեկնելով՝ զգույշ, վարանոտ, քայլեց առաջ: Պարանը դողում էր նրա ոտքերի տակ: Նա երկու անգամ կանգնեց և նայեց աջ ու ձախ, կարծես օգնություն էր աղերսում: Բայց երկու անգամ էլ լսվեց մտրակի շաչոցը և առյուծը ստիպված առաջ շարժվեց:

«Այո՛, կրկեսի առյուծների կյանքը կեղծ կյանք է»,— մտածեց «Սև բաշը»: Ետևում մի անդառնալի տեղ մնացած կյանքի կրկնօրինակն է: Առյուծների մկանները այստեղ բանի պետք չեն, պարզապես անպետք են: Դրանք միայն հիացմունք և թվացող վախի զգացմունք են առաջացնում դիտողների մեջ: Նրանք չեն տեսել իսկական առյուծների, ազատության մեջ, և հիմա թեթևամտորեն ծափահարում են դատարկ, ոչինչ չարժեցող բաների համար: Ու նրանց հանույքի համար է, որ իրենց վանդակել են, և նրանք են մեղավոր, որ իրենք իսկական առյուծների կյանքով չեն ապրում:

Շուտով եկավ «Սև բաշ» առյուծի ելույթ ունենալու պահը: Առյուծը զգաց, որ իր հետ կարևոր բան է կատարվելու: Այնպիսի բան, որին ոչ ոք չի սպասում, նույնիսկ ինքը: Չիմացավ որտեղից եկավ այդ վճռական միտքը: Միայն զգաց, որ այդ բանը լինելու է և որ դրան վաղուց էր սպասում: Ու նա չէր սարսափում: Երբ վարժեցնողը ժպտալով սկսեց մոտենալ, նա հանգիստ ցատկեց տեղից ու անտարբեր քայլերով դիմեց դեպի բեմի կենտրոնը: «Սև բաշը» բեմի կենտրոնում պառկեց, աչքերը փակեց և զգաց, թե ինչպես են իր շուրջը փռվում մնացած առյուծները: Դա առյուծների ամենալավ համարն էր: Պառկում են իրար կողքի, մտերմիկ, կարծես վանդակում են, ոչ թե բեմում: Վերևից նայողի առաջ հիանալի տեսարան էր բացվում: Գորշավուն, ահեղ կենդանիների կլոր շրջանակը խլրտում էր, փոփոխվում: Առյուծները իրար հետ խաղում էին, երբեմն թափահարում բաշերը, խաղացնում պոչերը: Երբեմն էլ լսվում էր մեկնումեկի երջանիկ մռլտոցը: Նրանք կարծես ինչ-որ հանդիսավոր առիթով իրար շուրջ էին բոլորել ու անչափ երջանիկ էին:

«Սև բաշը» գլխի կտրուկ շարժումով ետ մղեց կողքին պառկածի դեպի իր բաշը երկարած մռութը: Նա զայրացած էր: Ընդհանուրի տրամադրությունը նրա վրա չէր ազդում: Նրա վրա իջել էր անտարբերության և հոգեկան սառը հանգստության պահ: Երբ դահլիճը թնդում էր ծափահարություններից, նա կարծես ոչինչ չէր լսում: Նրա ականջների վրա ասես ձայներ խլացնող միջնորմ էր իջել ու դրա հետևանքով չքվել էին այն ամենը, ինչ երկար տարիներ նրա շրջապատն էին կազմում: Չկան ո՛չ



# ՔՆԿՈՏԸ

ԳՐԻԳՈՐ ՄԱՋՄԱՆՅԱՆ

Անտառը զարթնել, շշնջում է մեղմ,
Հավքերի անուշ դայլայլն է թռվում,
Մշուշը հանդից բարձրանում է վեր
Ու ցրվում կամաց կապույտի ծովում...

Արևն է ժպտում լեռներից կապույտ,
Ո՞ւր է թաքնվել գիշերվա քամին,
Ծամփա են ելել ամպերը անփույթ,
Ննջում է միայն Արտակն այս ժամին:

Սար է բարձրացել ջոկատը մութով,
Դիտում է շքեղ արևածագը,
Ծամբար կդառնան բոլորը շուտով,
Քնած է սակայն դեռ մեր Արտակը:

Իսկ երբ խոր քնից արթնանում է նա,
Լսում՝ ջոկատը սարում է արդեն,
— Ինչո՞ւ,— ասում է,— սարը բարձրանամ,
Արևածագը այստեղ կդիտեմ:

հանդիսականներ, ո՛չ վարժեցնողը, ո՛չ իրենց սպասող վանդակները և ո՛չ էլ կերակուրը: Ինքը շրջապատված է իր նման զորեղ առյուծներով և բոլորի մեջ միակն է, որ սև բաշ ունի: Որ քիչ հետո իրենք դուրս կգան որսի և ինքը մնացած առյուծներից ավելի հզոր ու ճարպիկ ցատկ կկատարի, կճանկի զոհին և լիաթոք կշնչի, երբ պատառոտված որսի մարմինը տաք գոլորշիներ կարձակի: Մտրակի շաչոցն էլ չլսեց: Երազով այնքան էր տարվել, որ թվաց թե ամպ է որոտում, իսկ ինքը հոտոտում է սկսվող տեղատարափի ճնշումը, որը լցվում է ռունգերն ու անսովոր կերպով ուռցնում:

Հետո, կարծես արթնացավ, զգաց, որ վարժեցնողը իր մեջքը բզբզում է: Քաղցր երազները իսկույն չքացան, և նա վերադարձավ իրական կյանք: Հասկացավ, որ համարը վերջացել է և քիչ առաջ իր շուրջը բոլորած առյուծները վեր են կացել ու միայն ինքն է մնացել բեմի կենտրոնում պառկած: Բայց և այնպես առյուծը տեղից չշարժվեց: Նա մնաց պառկած: Հասել էր այն կարևոր պահը, որի մասին քիչ առաջ մտմտում էր: Վարժեցնողը և հանդիսականները ծափահարում են. ի՞նչ են ուզում: Ի՞նչ է ուզում փոքրիկ աղջնակը, որին կամենում էր անկեղծորեն սիրել և որը հետո սև շորեր հագավ ու մտրակ վերցրեց: Նա հիշեց իր երկրորդ համարը, սարսափելի կրակի օղակները և մի փոքրիկ պատառիկը: Նա անշարժ էր: Հիմա վարժեցնողը, որպես հաղթող, ձեռքերը վերև չի տնկի ու ծափեր չի կորզի: «Սև բաշը» որոշել է պառկած մնալ:

Հանկարծ նա առավ արյունոտ մսի բուրմունքը: Անկնթարթորեն զգաց ստամոքսի գոյությունը և սարսռաց ներքին խռովքից: Նրա մեջ բարձրացավ մսի պատառիկը կուլ տալու տենչը, և նա ստիպված աչքերը բացեց: Մսի պատառիկը ժամացույցի ճոճանակի նման ճոճվում էր իր քթածակերի մոտ, և նա գլուխն ակամա սկսեց տարուբերել: Հետո մշուշի մեջ նկատեց մսի պատառիկը շարժող ձողը, այդ ձողը բռնած մատները և վերջապես վարժեցնողին: «Սև բաշը» նորից նայեց պատառիկին: Փորձեց ճանկել: Չստացվեց: Մսի կտորը շատ մոտիկ էր, հենց երախի մոտ: Բայց ոչ մի կերպ չէր հաջողվում առնել լեզվի վրա և զգալ համը: Երբ մի քանի անգամ ճանկելու փորձը ձախողվեց և խոշորացած աչքերով նայեց վարժեցնողին, հանկարծ հասկացավ, որ միսը կուլ տալու համար հարկավոր է ոտքի կանգնել: «Սև բաշը» տեղից վեր կացավ և նույն պահին առամների տակ զգաց ցանկալի մսի ճզմվելը: Աչքերն այլևս ոչինչ չէին տեսնում: Մսի հյութը լցվում էր բերանի ամենաամենավոր խոռոչները և այնտեղից անհայտ ուղիներով գալիս շղարշում գլուխը: Դրանից նրա շուրջը ամեն ինչ քաղցրանում էր, դառնում հարազատ: Բայց ահա պատառիկը կուլ գնաց և նա զգաց, որ բերանը նորից է լցվում լորձունքով: Առյուծը ոչ մի բան չարտահայտող աչքերով նայեց ոտքերը լայն դրած վարժեցնողին: Նրա կողքին, ճաղերից դուրս, աչքերը պլշած կանգնած էր մտրակավոր փոքրիկ աղջիկը: Դահլիճում լռություն էր տիրում: «Սև բաշը» գլուխը իջեցրեց, առանց առյուծների և հանդիսականների կողմը նայելու՝ նորից փռվեց: Նա աչքերը փակեց, բայց առաջվա գրավիչ պատկերներից ոչ մեկը չներկայացավ նրան: Նա անորոշ զգում էր քիչ առաջ բերանում եղած մսի համը և այն, որ մսի այդ կտորը այժմ սահում է իր կերակրափողով:

Երբեք չէր պատահել, որ առաջին համարը կատարելուց հետո նա պառկեր և չուզենար այլևս, որ ամեն ինչ սովորական ձևով ընթանար: Նա ինքն էլ

# ԻՄ ՋԻ՛ՆՋ ԱՌՎԱԿ

ԳԱՐԻԿ ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

Գալարելով մեջքդ բարակ,
Կարկաչո՜ւմ ես, իմ ջի՛նջ առվակ,
Մեր պարտեզի միջով.
Ծուրջդ փռում կյանք ու կանաչ
Եվ շտապով սահում առաջ՝
Դեպի արտերը չոր։

Նիհարում ես ամռան տապին,
Բայց չես հոգնում անձայր համփիդ.
Բանում ես ու երգում։
Թեկուզ մաս-մաս դու սպառվես,
Հոգ չէ՛ դարձյալ պիտի ապրես
Աշնան առատ բերքում։

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

---

չիմացավ, թե ինչպես այդպիսի վճիռ կայացրեց։ Այսօր իր համարը չկատարելու վճիռ։ Դե հիմա թող առյուծները հասկանան, թե ինչու է վարժեցնողը «Սև բաշին» ամենից շատ սիրում։ Նա վաղուց էր «Սև բաշ» առյուծի աչքերի մեջ նկատել ընկրոտ ոգու թաքուն փայլը։

Նա նորից հռռռաց արյունոտ միսը։ Աչքերը բացեց և, առանց վարժեցնողի կողմը նայելու, հասկացավ, որ պատառիկը կուլ տալու համար պետք է ոտքի կանգնել։ «Սև բաշը» ոտքի ելավ ու նորից զգաց ատամների տակ մսակտորի անուշ համը։ Նա դանդաղ կուլ տվեց։ Հետո, ոչ մի կողմ չնայելով, նորից փռվեց։ Այնպես հնազանդորեն փռվեց, որ կարծես հերթական համար է կատարում և որ շուտով պետք է ծափահարություններ լսվեն։ Բայց ծափահարություններ չլսվեցին։ Նա արդեն գիտեր, թե մարդիկ ինչու են ծափահարում։ Նրանք չեն ցանկանում, որ առյուծը պառկած մնա և նմանվի ինքն իրեն։ Նրանք ուզում են անպայման տեսնել այդ առյուծի երկրորդ համարը, կրակների միջով ցատկելը, որը նկարված է կրկեսային կոլեկտիվի ելույթն ազդարարող բոլոր հայտագրերում։ Չէ՞ որ դա ամենադժվար համարն է։

Բեմի կենտրոնում անհամբեր լռությամբ սպասող հանդիսականների առաջ պառկած առյուծը հոտառությունը լարել և սպասում էր մի նոր պատառիկի հայտնվելուն։ Բայց մսի հոտը այդպես էլ չըզգաց։ Դրա փոխարեն վարժեցնողը ձեռքի ափով մի քանի անգամ թփթփացրեց առյուծի մեջքին և ինչ-որ բառեր շշնջաց ականջին։ Առյուծը հասկացավ, որ վանդակը բաց է և ինքը կարող է գնալ։ Նա վեր կացավ ու փոքրիկ, թեթև քայլերով դիմեց դեպի բացված վանդակները։



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



# ԵՎ ՋՈՒՐՆ ԷՐ ՆՈՒՅՆԸ, ԵՎ ՁՈՒԿԸ

*ՄՈՒՇԵՂ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*

— Ինչպե՞ս են գործերըդ, երիտասա՛րդ...

Քեռի Հակոբն էր: Արդեն տուն էր դառնում, բայց տաբատի փողքերը դեռ չէր իջեցրել ու ոտքերն էլ դեռ բոբիկ էին: Մի ձեռքին դույլըն էր՝ մեջը լիքը ձկներ, մյուսով՝ ուսին դրած եղեգնափայտն էր բռնել:

Տղան չշրջվեց, մնաց այնպես, ինչպես նստած էր՝ հայացքը ջրին, ծնկներով ամուր սեղմած ձողը: Միայն ուսերը թոթվեց:

— Ոչի՛նչ:

Քեռի Հակոբը նայեց տղայի կողքին դրված դատարկ դույլին ու ժպտաց.

— Սա՞ է ոչինչը:

— Ըհը՛,— տղան նորից ուսերը թոթվեց:

«Տարօրինակ տղա է»,— մտածեց քեռի Հակոբն ու ուսերը շարժեց.

— Անցյալ օրն ավելի հաջող էր, էլի մի երեքը բռնել էիր:

— Չորսը,— ճշտեց տղան:

— Իսկ եթե ինձ լսես՝ դույլդ կլցվի:

— Վերևո՞ւմ:

— Այո՛, վերևում՝ ընդամենը հարյուր մետր այն կողմ: Կարթը կախում ես ու անմիջապես, «թըը՛մփ», խփում են:

— Գիտե՛մ:

— Եվ չե՞ս գնում:

— Ո՛չ: Այստեղի ձուկն ավելի համեղ է:

— Բա՞ն հնարեցիր,— քեռի Հակոբը ծիծաղեց,— նո՛յն ձուկըն է, նո՛յն ջուրը...

— Այո՛, բայց այստեղի ձուկը համեղ է:

— Դու վերևի ձկան համը փորձե՞լ ես:

— Փորձել եմ: Առաջին օրը վերևում նստեցի: Շատ էր հեշտ բռնվում:

Քեռի Հակոբն ուսերը թոթվեց. «Արի ու բան հասկացիր»: Նույնպիսի խոսակցություն երկու օր առաջ էլ էր ունեցել: «Այնտեղ ձուկ շատ կա,— ասել էր ինքը,— բարձրացիր վերև»: Իսկ տղան, ինչպես այսօր, հրաժարվել էր. «Գիտեմ: Չեմ ուզում»: «Ինչո՞ւ»: «Այստեղի ձուկը ավելի համեղ է»:

— Երեկ ինչո՞ւ չերևացիր,— հարցրեց քեռի Հակոբը:

— Գիշերն անձրև էր եկել:

— Դրա համա՞ր չեկար:

— Դրա համար:

Քեռի Հակոբն անձայն ծիծաղեց.

— Խելո՞ք, իսկ դու չգիտե՞ս, որ դա ամենահարմար ժամանակըն է, ջուրը պղտորվում է և...

— Գիտեի, դրա համար էլ չեկա:

Տղան ցանկանում էր էլի ինչ-որ բան ասել, բայց ծնկների արանքում սեղմված եղեգնափայտը ցնցվեց և նա թռավ տեղից: Ձողից կախված անգույն լարը պըրկվել էր:

— Խփեց,— նկատեց քեռի Հակոբը:

— Խփեց,— համաձայնեց տըղան ու սկսեց փաթաթել լարը: Ջրի վրա հայտնվեց արծաթագույն մի փոքրիկ ձկնիկ, որ լարի հետ բարձրացավ օդ: Քեռի Հակոբն սպասեց, մինչև տղան ձկնիկը տեղավորեց դույլի մեջ, ու հարցրեց.

— Դու դեռ մնո՞ւմ ես:

— Ըհը՛:

— Այդ դեպքում՝ ցտեսությո՛ւն: Մինչև առավոտ,— ասաց քեռի Հակոբն ու քայլեց գյուղ տանող փոշոտ ճանապարհով:

— Ցտեսությո՛ւն...

Հաջորդ առավոտյան քեռի Հակոբը տղային գտավ նույն տեղում, նույն դիրքով նստած. աչ-

ՎԱԶԳԵՆ ՕՎՅԱՆ

# ԱՌԱԿՆԵՐ



## ՀԱՎԵՐՆ ՈՒ ԿՌՈՒՆԿՆԵՐԸ

*Ցանկապատի ետևում քուջուջ անող հավերը դարձան հարավ չվող կռունկներին.*

*— Այդ դեպի ո՞ւր, քույրիկնե՛ր:*

*— Դեպի տաք հարավ:*

*— Իսկ ի՞նչ կա հարավում:*

*— Կանաչ գարուն, պայծառ արև, զուլալ ջրեր:*

*— Իսկ այդ հարավը շա՞տ է հեռու:*

*— Շա՜տ, քառասուն սարի, քառասուն ծովի ետևում:*



*— Երանի ձեզ,— ասացին հավերը:— Մենք էլ կուզեինք ձեզ հետ անցնել քառասուն սարի, քառասուն ծովի վրայով, եթե չլիներ այս ցանկապատը:*

## ԳԱՌՆ ՈՒ ԳԱՅԼԸ

*Այս առակում էլ պատահեց հակառակը՝ գառը կանգնեց գայլի դիմաց ու սկսեց հայհոյել.*

*— Ա՜յ դու սրիկա գայլի լակոտ, այդ ի՞նչ իրավունքով ես հարձակվել հոտի վրա, պոկել իմ ցեղակիցների փափուկ դմակները:*

*— Ների՛ր, գառնո՛ւկ ջան,— պատասխանեց գայլը,— եթե ճիշտն ես ուզում իմանալ, ես իսկի մսակեր էլ չեմ:*

*— Քո եղբայրը հո՞ մսակեր է:*

*— Ես մորս միակ զավակն եմ:*

*— Քո հա՞յրը...*

*— Իմ հայրը քաղցից մեռավ:*

*— Ուրեմն քո քեռին է:*

*— Ես քեռի չունեմ:*

*— Ձենդ կտրի՛ր, ավազակի՛ մեկը,— գոչեց գառը,— հիմա քո մսակեր ցեղակիցների ոխը քեզնից կառնեմ:*

*Գայլը թակարդում էր:*

*Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ*

---

քերը ջրին, եղեգնափայտն ամուր սեղմած ծնկների արանքում: Կարելի էր մտածել, որ տղան ամբողջ գիշերն անցկացրել էր գետի ափին, եթե, իհարկե, չլիներ կողքի դատարկ դույլը:

— Բարի լո՛ւյս, երիտասա՛րդ:

— Բարի լո՛ւյս:

— Գիշերը ես մտածել եմ ասածներիդ մասին,— առանց տըղայի կողմը նայելու, ասաց քեռի Հակոբն ու, ամեն օրվա պես ճանապարհը շարունակելու փոխարեն, նստեց տղայի կողքին՝ մի քանի քայլ ներքև,— դու ճիշտ էիր, գիտե՛ս, այստեղի ձուկն իսկապես ավելի համեղ է:

Տղան լսեց ու մի տեսակ վատ զգաց իրեն:

— Չէ՛, քեռի՛ Հակոբ:

— Ի՞նչը չէ:

— Միևնույն ջուրն է, միևնույն ձուկը, միևնույն համը: Ազնիվ խոսք, ես դա հնարել էի... միայն այստեղ ավելի դժվար է...

— Դե՛, եթե դժվար է, ուրեմն համեղ է,— ասաց քեռի Հակոբն ու ժպտաց:

Տղան էլ ժպտաց և ավելի ամուր սեղմեց ձողը ծնկների արանքում:

# ՄԱՐԴԻԿ ՍԵՂԱՆԻ ՇՈՒՐՋԸ

ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ

## ՁԵՐ ԱՋ ԵՎ ՁԱԽ ԿՈՂՄՈՒՄ ՆՍՏԱԾՆԵՐԸ

Կիրթ վարվեցողության մասին գրված բազմազան գրքերի շատ էջեր հասցեագրված են նրանց, ովքեր սովոր չեն ու չեն կարողանում հոգալ ուրիշների մասին:





Այդ խորհուրդներից մեկը պատվիրում է ուտելիս չփռթացնել, մյուսը՝ չկրծել եղունգները, երրորդը՝ չքորվել, չթքել...

Դարեր առաջ Անգլիայում լույս տեսած մի գիրք, որ նախատեսված էր պալատականների համար, պատվիրում էր քիթը սփռոցով չմաքրել և սեղանի մի ծայրից մյուսը չթքել: «...Առաջինը դո՛ւ մի մեկնի ձեռքդ ափսեին,— սովորեցնում է «Շիտակ հայելի երիտասարդների համար» գիրքը,— մի՛ խժռի խոզի նման և ուտելիս մի՛ փչի ձկնապուրի մեջ, ցայտերն այս ու այն կողմ շաղ տալով... Պնակիդ մոտ ոսկորների բլուր մի՛ կուտակի...»

Հինավուրց Մեքսիկայի բնակիչները՝ ացտեկները ևս պակաս ուշադրություն չէին նվիրում այն բանին, թե ուտելիս մարդ իրեն ինչպես պիտի պահի: «Շատակերի նման փնթի մի՛ կեր,— հանձնարարում է մեզ հասած գրքերից մեկը:— Ջուր խմելիս օդը թափով ներս մի՛ քաշի: Դու հո շան թուլա չե՞ս»:

Այս կանոնների ցանկը, որ սովորաբար սկսվում է «մի» բառով, հեշտ է շարունակել: Մենք այդպես չենք վարվի: Բոլոր այդ «մի»-երը հանգում են մի բանի. սեղանի շուրջը մի՛ անի այն, որ կարող է տհաճ լինել ուրիշներին:

Տասնհինգ դար առաջ չինացի մի տիրակալ՝ Լյան-չժու գավառի տերը, այցի է գնում հարևան գավառի տիրակալին: Մի հարյուր լի ճանապարհ չէր կտրել նա, երբ նկատում է, որ հարևան գավառի բնակիչները սովորականից տարբեր վարվելաձև ունեն: Նրան շատ է զարմացնում, որ այդ մարդիկ ամենևին չեն հարգում միմյանց ուտելու ժամանակ՝ ձեռքերը չեն լվանում, պնակները լպստում են և այլն: Նա այնպես է վիրավորվում դրանից, որ հրաժարվում է ճանապարհը շարունակել: «Ինչ ասես, որ չտեսա այդ շնաբարո երկրում»,— ասում է իր ուղեկիցներին ու հրամայում շուռ տալ ձիերի գլուխները:

Հարևան գավառի գայրացած տիրակալը հեծելազոր է ուղարկում նրանց ետևից, բայց արդեն ուշ էր: Երկու գավառ-պետությունների միջև երկարատև պատերազմ է ծագում: Եվ ինչպես բոլոր պատերազմների ժամանակ, այնպես էլ այդ պատերազմում, սպանվում են ու վիրավորվում, այրվում՝ գրոհով վերցված գյուղեր ու քաղաքներ: Եվ այդ մարտերի թոհուբոհում, այս ու այն զինվորի սխրանքների, պարտությունների ու հաղթանակների ռազմագեկույցների արանքներում կորչում ու մոռացվում է այն փոքրիկ կայծը, այն նախնական դիպվածը, որից հրդեհ էր բռնկել:

Սակայն, կան մարդիկ, որ, ճիշտ է, մատները չեն լպստում ու ոսկորներ չեն թափում սփռոցին, բայց նրանց հետ սեղան նստելը շատ էլ հաճելի չէ: Աֆրիկյան մի ավանի բնակիչներ սարսափով տեսնում են, թե ինչպես Դ. Լիվինգստոնն ու նրա ուղեկիցները կարագուհաց են ուտում:

— Մի տեսե՛ք, տեսե՛ք,—ձայն են տալիս միմյանց:—Մի դրա՛նց նայեք: Կարա՛ք են ուտում: Թո՛ւ, ի՛նչ զզվելի բան:

Բանն այն է, որ բնիկները միայն հալած յուղ էին օգտագործում և ուտում էին հացը յուղի մեջ թաթախելով:

Միանգամայն հնարավոր բան է, որ մեզ էլ զզվանք պատճառի

Սկիզբը՝ 1972 № 12-ում և 1973 թ. №№ 1, 3, 6-ում

կետ ձկան հում ճարպը, որ հաճույքով ուտում են էսկիմոսները։ Բայց եթե ոչ ոք մեզ չի ստիպում միանալ նրանց հիացմունքին, ապա ճիշտ նույն ձևով, չի էլ հարկադրում բարձրաձայն արտահայտել մեր զզվանքը։ Առավել ևս այն մարդկանց ներկայությամբ, ովքեր ուտում են այդ կերակուրը կամ ում դուր է գալիս դա։

Թե ինչպես պետք է խնայել ուրիշների ախորժակն ու տրամադրությունը՝ չի մոռացել այնպիսի մի նշանավոր մարդ, ինչպես Հուլիոս Կեսարն էր։ Մի անգամ, ընկերների հետ, նա ճաշում է մի տեղ, ուր մատուցում են ծնեբեկ, որ սովորական ձիթայուղի փոխարեն համեմված էր գմռսաբույսի յուղով։ Դրա համի մասին գաղափար կազմելու համար պատկերացրեք, թե ուտում եք քացախի փոխարեն օդեկոլոնով ցողված սալաթ։ «Կեսարը հանգիստ կերավ այդ կերակուրը,— գրում է Պլուտարքոսը,— իսկ անբավականություն հայտնող իր ընկերներին կշտամբանքով ասաց. «Եթե ձեզ մի բան դուր չի գալիս, ապա չուտելը միանգամայն բավական կլինի։ Իսկ եթե որևէ մեկն ուզում է փնովել այս անգիտությունը, ապա նա ինքն է անգետ»։

Մի՛ կարծեք, թե Հուլիոս Կեսարը բավականությամբ է կերել տհաճ ուտելիքը։ Իսկ մենք մի՞շտ է, արդյոք, որ լավ ենք պահում մեզ։ Նույնիսկ այսպիսի մանրուք. եթե երիտասարդ տանտիկինը ապուրն աղի է արել, իսկ ձուկը լավ չի տապակել, արդյո՞ք միշտ է, որ տակտ ու խոհեմություն ենք ունենում չնկատելու տալ այդ։ Այո՛, տանտիրուհու մատուցած ուտելիքը կարող է և դուր չգալ մեզ։ Նա, ով սովոր է մտածել նախ և առաջ իր և իր զգացումների մասին, ցույց կտա իր դժգոհությունը։ Մեծահոգի, ուրիշների մասին մտածող մարդը այդպես չի վարվի։

Բայց եթե տանտիկինն, ինչպես, լավ ուտելիք է պատրաստել, որքա՜ն կարևոր է այդ ասել նրան։ Ոչինչ այնքան հաճելի չի լինի նրան, որքան լսել այդ գովեստը։ Զուր չէ, որ ռուսական հին սովորության համաձայն, համով ճաշկերույթից հետո խոհարարին հրավիրում և շնորհավորում էին նրա հաջողությունը։ Դա նրա փառքն ու հաղթանակն էր։ Այդպես է ընդունում հասարակության օվացիան դիրիժորը, այդպես է գլուխ տալիս պիեսի հեղինակը, երբ նրան բեմ են կանչում։

Մեր ժամանակներում էլ կըրթված անգլիացին ճաշկերույթի հաջորդ օրն իր պարտքն է համարում մի նամակ ուղարկել տանտերերին և շնորհակալություն հայտնել իրեն ցույց տրված ուշադրության և հյուրասիրության համար։ Նման սովորույթ կա նաև Ճապոնիայում։ Մեզանում դա ընդունված չէ։ Բայց դրա փոխարեն մեզ մոտ ևս, ինչպես և ամենուրեք, ընդունված է ուշադրությանը՝ ուշադրությամբ և բարին՝ բարով հատուցել։ Իսկ թե մարդուն հաճելի բան անելու ինչ ձև կընտրեք՝ դա ձեր անձնական գործն է։

Թարգմ. Մ. ԱՅՈՒՆՑԻ



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ՀՐԱՉՅԱ ԱՃԱՌՅԱՆԻ ՀԵՏ

ԳԱՌՆԻԿ ՍՏԵՓԱՆՅԱՆ

*Նրա աշխատելու ձևն էլ յուրօրինակ էր։ Սիրում էր օգտագործել աշակերտական գրիչ ու թանաքաման, և, չգիտեմ ինչու, այդ թանաքամանի մեջ թանաքը միշտ պակաս էր լինում, աշակերտի նման հա ցնցում էր կլոր ու սպիտակ թանաքամանը, որպեսզի գրչածայրը թանաքոտի։*

*Ավելի տարօրինակ էր թղթի նկատմամբ ունեցած նրա նախասիրությունը։ Կարծես միշտ թղթի պակաս էր զգում։ Գրում էր ձեռքըն ընկած պատահած թղթի կըտորի վրա, հաճախ սոսնձով, իրար կպցնելով նամակներից, նույնիսկ օրվա թերթերից, պոկած պատառիկներ։*

*Երբ զարմանք էի հայտնում, թե ինչո՞ւ է նման թղթերի վրա գրում, ասում էր, թե մեր նախահայրերը դժվարությամբ կոկում էին հաստ մագաղաթը ու նրա վրա գրում եղեգնյա գրչով, մենք այս հարթ ու բարակ թղթի վրա պողպատե գրչով չե՞նք կարող գրել։*

*Այնուամենայնիվ մի օր որոշեցի թուղթ տանել նրան։ Տպարանում ունեինք ընտիր թղթի մնացորդներ, դրանցից խնդրել էր պրոֆ. Ղափանցյանը և շատ շնորհակալ եղել, նույնիսկ ասել էր, թե երբ փայլուն թղթի վրա է գրում, մտքերն ավելի լավ է արտահայտում։ Խնդրեցի տպարանի տեխնիկական դիրեկտոր Էփրիկից և մի մեծ կապոց «վերժե» թուղթ տարա Աճառյանին։ Կարծում էի, թե գոհ պիտի մնա,*

Սկիզբը՝ 1973 թ., №№ 1, 2։

## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# «ԴՐՈՒԺԲԱ» 17-ՐԴԸ

Պատանի թեթև ատլետների համամիութենական մրցումները մեր երկրում առաջին անգամ կազմակերպվել է 1956 թվականին: Նախաձեռնության հեղինակները էին «Պիոներսկայա պրավդա» թերթի խմբագրության աշխատակիցները:

1965 թվականին լեհ բարեկամների նախաձեռնությամբ թեթև ատլետիկական քառամարտի միջոցառումները դարձան միջազգային: Այդ ուշագրավ խաղերին արդեն մասնակցում էին Ֆրանսիայի, Բուլղարիայի, Չեխոսլովակիայի, Ֆինլանդիայի և եվրոպական այլ երկրների պիոներներ:

Միայն անցյալ տարի Սովետական Միությունում թեթև ատլետիկական քառամարտի միջոցառմանը մասնակցում էին շուրջ հինգ միլիոն պատանիներ: Սկզբնական մրցումներում հաղթող պիոներական 19 դրուժինաների ջոկատներ Իվանովոյում կայանալիք վերջնախաղին մասնակցելու իրավունք էին ստացել:

Մեր հանրապետությունից «Դրուժբայի» 17-րդ մրցումներին մասնակցում էին Երևանի № 68 դպրոցի պիոներական դրուժինայի թեթև ատլետները: Մրցումների ընթացքում Արսեն Բագրատյանը թռիչք երկարությունում երկրորդն էր: Իսկ Արմեն Հայրապետյանը հաղթահարելով 170 սանտիմետր բարձրություն ունեցող ձողափայտը, շահել է մրցանակային երրորդ տեղը:

Բազմամարտի ընդհանուր արդյունքներով Երևանի № 68 միջնակարգ դպրոցի պիոներական դրուժինան գրավել է 12-րդ տեղը: Իսկ թեթև ատլետիկական քառամարտի մրցումներին ակտիվ մասնակցելու համար դրուժինան պարգևատրվել է Վ. Ի. Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպության կենտրոնական խորհրդի հուշանվերով և «Պիոներսկայա պրավդա» թերթի պատվոգրով:

---

բայց որքան զարմացա, երբ նա խեթ նայեց ձեռքիս կապոցին, հարցրեց պարունակությունը և իմանալով, որ գրելու թուղթ է, անտարբերությամբ ասաց.— Դի՛ր լուսամուտի մոտ:

— Ընտիր թուղթ է, պրոֆեսո՛ր, Էփրիկն է ուղարկել,— ասացի, փորձելով հետաքրքրությունը շարժել:

— Դի՛ր, եթե պետք լինի, կօգտագործենք:

Հաջորդ և մյուս օրերին կապոցը նույն տեղումն էր, առանց բացվելու, իսկ ինքը հա սոսընձում էր թղթի պատառիկները, կպցնում միմյանց:

Մի աչքը երեխա ժամանակ կուրացել էր, միականի էր, այդ առողջ աչքն էլ կիսով կորցրել էր տեսողությունը: Չնայած դրան՝ մոլեգին արագությամբ կարդում էր ու գրում: Կողքին կանգնած մարդկանց չէր ճանաչում, ձայնից էր որոշում զրուցակցի ով լինելը: Գրելիս թեքվում էր թղթի վրա, առողջ աչքը այնքան մոտեցնում սեղանին, որ կարծես պիտի կպչեր նրան: Կարդալիս էլ գիրքն էր մոտեցնում աչքին, հայացքը արագ սահեցնելով ձախից աջ:

Վերին աստիճանի բարի, հոգատար, պարզ, մարդամոտ անձնավորություն էր, ուներ երեխայի պարզամտություն, անմիջականություն, դյուրահաղորդ էր բոլորին, կոշկակարի հետ նույնքան հաճույքով ու սիրով կարող էր զրուցել, որքան գիտնականի:

Դյուրազգաց էր, հուզվում էր որևէ դժբախտ պատահարի մասին լսելիս: Ամենից շատ հուզվում էր հանգուցյալ կնոջ մասին խոսք բացվելիս:

Ասում էր, թե այդ կինը եղել է իր օգնականը ամբողջ քսան տարի, գեղեցիկ, մարգարտաշար ձեռագրով արտագրել է «Արմատական բառարանի» և «Հայոց լեզվի պատմության» հազարավոր էջերը:

— Երեխա չունեինք, մեր երեխան «Արմատական բառարանըն» էր, որի վրա գուրգուրում էինք այնպես, ինչպես պիտի գուրգուրայինք երեխայի վրա, եթե ունենայինք: Բառարանի հազարավոր էջերը շալակած քանի՜-քանի քաղաք ենք անցել, ճանապարհորդելով գրաստով, սայլերով, ոտքով: Ամեն անգամ, երբ հասնում էինք նախատեսված վայրը, մեր առաջին գործն էր լինում նայել, թե մեզ հե՞տ է բառարանը, լրի՞վ են էջերը, ու երբ համոզվում էինք, որ ոչինչ չի կորել, գերագույն հաճույքով միմյանց էինք նայում...

# ՋՈԿԱՏԻՆ ՇՆՈՐՀՎԵՑ ԱՋԹԵՎԱՅԻՆԻ ԿՈՉՈՒՄ

Երեք տարի առաջ կոմերիտական ուղեգրով ես ներկայացա ջոկատ: Իսկ ջոկատը դեռևս անվանակոչում էլ չուներ:

Ջոկատն անվանակոչեցինք Սովետական Միության կրկնակի հերոս, օդաչու Նելսոն Ստեփանյանի անվամբ:

Ջոկատի անդամների հիշողության մեջ անջնջելի կմնա Նելսոն Ստեփանյանի տղայի՝ Դեմիլ Ստեփանյանի հետ ունեցած մեր հանդիպումը, որի ընթացքում ուսանելի շատ բան իմացանք հերոսի կյանքի ու գործունեության մասին:

Ջոկատի «Սասուն» թիմը մասնակցել է դպրոցում և շրջանում կազմակերպված քիմիայի, ֆիզիկայի, մաթեմատիկայի և այլ օլիմպիադաների, ուրախների և հնարամիտների մրցույթների: Ա. Թերզյանը, Գ. Սերոբյանը և Ա. Հարությունյանը հաջողությամբ հանդես էին գալիս մրցույթներում, իսկ օլիմպիադաներում՝ հաճախ գրավում մրցանակային տեղեր: Ջոկատի գերազանցիկ պիոներները սիրով օգնում են ետ մնացող ընկերներին, որի շնորհիվ մեկ տարվա ընթացքում մենք կարողացանք իրականացնել «Առանց երկուսների դասարանից-դասարան» կոչը:

Մեր ջոկատը հետաքրքիր գործեր է կատարել նաև «Բարեկամություն», «Իմ հայրենիքը՝ ՍՍՀՄ», «Աստղիկ», «Գեղեցիկի աշխարհում» և մյուս երթուղիների ուղղությամբ: Թղթի մակուլատուրայի և մետաղի ջարդոնի հավաքումից ստացված գումարը ուղարկել ենք Չուկոտկայի պիոներ-պալատի և Արփա-Սևան ջրատարի կառույցներին: Վիետնամի պիոներներին ուղարկել ենք գրենական պիտույքներով լցված 50 պայուսակ:

Այսպիսի և մի շարք պիոներական այլ աշխատանքների համար մեր ջոկատին շնորհվեց աջթևայինի կոչում, որով հպարտանում և ավելի նոր ու հետաքրքիր նախաձեռնությունների ենք ձգտում բոլորս:

ԳԱՅԱՆԵ ԱԴԱՄՅԱՆ

*Երևանի № 52 դպրոցի 10-րդ դաս.*

---

*Աճառյանը կնոջ մահից հետո դրսում էր ճաշում: Մի ժամանակ հաճախելիս է եղել Աբովյան փողոցի վրա գտնվող «Աբխազդոմ աղա» ճաշարանը, ուր պատրաստելիս են եղել պոլսական ընտիր կերակուրներ: Հետագայում այդ ճաշարանը փակվեց: Նրա շրջակայքում, այսինքն՝ այժմյան ունիվերմագի մոտերքում, կար մի այլ ճաշարան, որի հաճախորդներից էր դարձել: Նախաճաշում էր սովորաբար տանը:*

*Մի օր երբ պատրաստվում էի սենյակից դուրս գալ, առաջարկեց մնալ:*

*— Սպասի՛ր,— ասաց,— քեզ հյուրասիրելու եմ այնպիսի բանով, որ այս քաղաքում չես կերել:*

*Հետաքրքրությունս շարժեց նրա ասածը. այդ ի՞նչ հազվագյուտ բան էր հյուրասիրելու, որ տեսած չլինեի:*

*Սպասեցի: Մոտեցավ պահարանին, բաց արեց խարխլված դռնակը, դարակներից մեկի վրայից վերցրեց թղթի մի կապոց, բերեց դրեց սեղանին ու սկսեց բաց անել: Քանդում էր թղթի անվերջանալի փաթեթները, բայց բան չէր երևում: Սեղանը լցվեց թղթի կտորներով: Լուռ հետևում էի նրա աշխատանքին. պետք էր տեսնել, թե ինչպիսի արագությամբ էր քանդում թղթի նորանոր շերտերը: Կապոցը փոքրանում էր, իսկ պարունակությունը չէր երևում:*

*Շուտով սխտորի հոտը բաց արեց գաղտնիքը…*

*— Անպիտանը այնքան սաստիկ հոտ ունի, որ հարկադրված այսպես փաթաթում ենք,— ասաց ու սկսեց բարակ շերտերով կտրել:*

*— Ով որ ապուխտ կտրել չգիտե, նա ապուխտից համ չի առնի,— շարունակեց,— պետք է շատ բարակ կտրել: Լսե՞լ ես կեսարացու պատմությունը:*

*— Ո՛չ,— ասացի:*

*— Մարդու ապուխտը գողացել են, և նա ընկել է խոր մտատանջության մեջ: «Ապուխտը չեմ ափսոսում,— ասել է,— վախենում եմ, որ գողացողը մանրել չիմանալով, փչացնի հրաշալի բաստուրման»:*

*Ախորժակով կերանք: Ուտելու հետ նա պատմում էր սխտորի բուժիչ հատկությունների մասին, գնահատելով մասնավորապես նրա հականեխիչ զորությունը:*

*Պատմեց նաև գազարի մասին, ասաց, թե գազարը շատ հարուստ է կենսանյութերով, թե ինքը երբ Փարիզում ուսանող էր և ապրում էր նյութական ծանր պայմաններում, սնվում էր օրական երեք գազարով:*

*— Երևակայեցեք,— ասաց,— այդ երեք գազարը լիովին բավարարում էր ինձ, մարդիկ չգիտեն գազարի ուժը, եթե իմանան, շուկայից թանկ կծախվի…*

(Շարունակելի)




Կինոն արվեստներից ամենաերիտասարդն է, նա դեռ ութսուն տարեկան էլ չկա: Թվում է՝ այնքան էլ քիչ չէ, եթե համեմատենք մարդու կյանքի տևողության հետ: Բայց մտաբերենք, որ երաժշտության, պարարվեստի, քանդակագործության, գրական արվեստի տարիքները հաշվվում են հազարամյակներով:

Այսօր մեզ համար, կինոսրահներում և հեռացույցով ամեն օր կինոնկարներ դիտողներիս համար, դժվար է պատկերացնել, որ եղել է մի ժամանակ, երբ կինոարվեստ առհասարակ գոյություն չի ունեցել:

Անցյալ դարի վերջերին, երբ մարդիկ նայել են առաջին կինոժապավենները, այն ժամանակ, երբ կինոարվեստը դեռ խանձարուրումն էր, ոչ ոքի մտքով չէր անցնում, թե շատ շուտով ինչպիսի՜ հսկա է դառնալու նորածինը, ինչպե՞ս է նվաճելու բովանդակ աշխարհը:

Բայց ինչո՞ւ ոչ ոքի, նույնիսկ կինոյի գյուտարարների մտքով չէր կարող անցնել այդ: Պատճառն այն է, որ կինոյի առաջին հանդիսատեսները դա համարում էին ոչ այլ ինչ, քան տեխնիկական հրաշք, զվարճալիք, բայց ոչ երբեք արվեստի հետ կապ ունեցող երևույթ: Եվ նրանք մեղք չունեին, իրոք որ առաջին կինոժապավենները ոչնչով չէին առնչվում արվեստին:




... 1895 թվականի դեկտեմբերի 28-ին Փարիզի հնօրյա հրապարակներից մեկում գտնվող մի սրահում, ավելի ստույգ՝ սրճարանում, Օգյուստ և Լուի Լյումեր եղբայրներն առաջին անգամ ցույց տվեցին աշխարհում առաջին սինոնկարահանումները: Հենց նրանք էլ համարվում են կինոյի գյուտարարները: Նրանց գյուտը իրենց նախորդած գիտական նվաճումների, հատկապես լուսանկարչության, զարգացումն էր (առհասարակ ոչինչ միանգամից, դատարկ տեղում չի ստեղծվում):

Ո՞րն էր այդ գյուտի հիմքը:




Բացատրենք երկու խոսքով. առարկայի շարժման հաջորդական փուլերն արտացոլող բազմաթիվ լուսանկարներ եթե ցուցադրենք արագ ընթացքով, կստացվի շարժում, այդ առարկայի շարժման պատրանքը: Կինոժապավենն այլ բան չէ, քան այդ լուսանկարների շարանը, իսկ կինոցուցադրումը՝ դրանց արտացոլումն էկրանի վրա:

Ի՞նչ ասել է կինեմատոգրաֆ. դա բարդ բառ է՝ կազմված հունարեն երկու բառից՝ կինե (շարժում) և գրաֆ (գրել): Այնպես որ բնավ սխալ չէ, որ սփյուռքահայերը, որոնք սիրում են օտար բառերը հայացնել, այդ արվեստը կոչում են շարժանկար:

Ինչպես ասացինք, առաջին կինոնկարները դեռևս շատ հեռու էին արվեստից: Դրանք կյանքից առնված զանազան դրվագների կարճ պատկերումներ էին, որոնք զարմացնում, ծիծաղեցնում, երբեմն նույնիսկ սաստիկ վախեցնում էին իրենց առաջին միամիտ հանդիսատեսներին: Նրանք զարմանում էին՝ տեսնելով, թե էկրանի վրա ինչպես են շարժվում մարդիկ. քահ-քահ ծիծաղում էին՝ ասենք, տեսնելով այսպիսի պատկեր. շուկայում՝ հետապնդում են մեկին, իսկ սա փախչում է գլխապատառ՝ շուկայում ամեն ինչ տակնուվրա անելով: Կինոյի պատմությանը հայտնի է նաև կինոցուցադրման թողած այսպիսի ազդեցությունը. մարդիկ տեսնում էին, թե ինչպես է ամբողջ ընթացքով սուրացող շոգեքարշը գալիս իրենց վրա և... սարսափահար դուրս էին փախչում դահլիճից:

Անցան կինոյի ծննդյան առաջին տարիները, և այն, ինչ մի ժամանակ թվում էր չտեսնված հրաշալիք, դարձավ սովորական բան: Իբրև տեխնիկական հրաշք, իբրև զվարճալիք, իբրև զարմանք կինոն սպառեց իրեն: Բայց չէր կարող չնկատվել, թե նա հանդիսատեսի հոծ զանգվածների վրա ազդելու ի՜նչ անսպառ հնարավորություններ է թաքցնում: Կի-

*նոն հենց դրան է պարտական իր հետագա բուռն զարգացմամբ, իր կատարած որակական թռիչքներով:*

*Մեր դարի առաջին տարիներին արդեն սկսեցին ստեղծվել և ցուցադրվել այսպես կոչված խաղային կինոնկարներ (սրանց մեջ հանդես էին գալիս ժամանակի հայտնի դերասանները): Կինոն սկսեց արագորեն ձևավորվել որպես արվեստ, և արդեն 1910 թվականին հաջորդող տասնամյակում ամբողջ թափով հաստատեց ճշմարիտ արվեստի իր անմերժելի իրավունքները: Այդ տասնամյակում է, որ և՛ Ռուսաստանում, և՛ Ամերիկայում, և՛ Արևմտյան Եվրոպայի երկրներում ստեղծվում են կինոնկարներ՝ հատուկ սցենարների հիման վրա, կինոդերասանների մասնակցությամբ և կինոռեժիսորների գեղարվեստական ղեկավարությամբ: Շատ ու շատ մեծահռչակ կինովարպետներ կինոն բարձրացրին ու հասցրին մեծ արվեստի մակարդակին:*

*Եվ այդ դեռևս կինոարվեստի զարգացման համր շրջանում: Հետագայում (30-ական թվականների առաջին կեսին) կինոն դարձավ հնչյունային, ձեռք բերեց նաև գունային արտահայտչություն: Կինոարվեստը մեծապես հարստացավ և՛ բովանդակությամբ, և՛ արտահայտչական միջոցներով:*

*Հիմա ամենքը գիտեն, որ գոյություն ունեն ոչ միայն գեղարվեստական կինոնկարներ՝ իրենց բազմաթիվ ժանրերով, այլև վավերագրական և գիտա-տեխնիկական ֆիլմեր: Կան նաև մուլտիպլիկացիոն, լայնէկրան, պանորամային ֆիլմեր: Հեռացույցի հայտնագործումից հետո մենք ամեն օր դիտում ենք ոչ միայն սովորական էկրանի համար ստեղծված, այլև հատուկ հեռացուցային ֆիլմեր: Կինեմատոգրաֆի մասնագետների համոզմամբ, այդ արվեստը զարգացման դեռ շատ հեռանկարներ, տեխնիկական և գեղարվեստական դեռևս շատ հնարավորություններ ունի, որ պետք է բացահայտվեն:*

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*




# ՋՈՒԹԱԿԻ ՖԻԶԻԿԱՆ

*Ն. ԴԵՄՈՒՇԿԻՆ*

## ԻՆՉՈՒ ԷԻՆ ՏԽՐՈՒՄ ՎԱՐՊԵՏՆԵՐԸ

Անցնում էին տարիները, մոտենում էր ծերությունը, և ավելի հաճախ էր տխրում ջութակի վարպետ Նիկոլա Ամատին: Այդպիսի պահերին նա չէր կարողանում տանը մնալ: Կրեմոնի փողոցներով զբոսնելով գնում էր գետափ, կանգնում Պոյի ափին և նայում նավերին: Ամատին չէր վախենում մահվանից: Նա բավականին երկար էր ապրել, և ճակատագիրը նրան չէր խնայել ո՛չ փառք, ո՛չ հարստություն: Սակայն վարպետի սիրտը խռովված էր: Զավակներին կարելի է ժառանգություն թողնել փող, կարելի է հայտնել «Ամատիի լաքի» գաղտնիքը, բայց հնարավո՞ր է, արդյոք, նրանց փոխանցել իր տաղանդը, գեղեցիկի նկատմամբ սերը, կամ սովորեցնել՝ երկյուղածորեն վերաբերվել այն փայտի կտորին, որից ջութակ է ծնվելու: Նրան մխիթարել կարող են միայն աշակերտները՝ Գվառներին և Ստրադիվարիուսը, հատկապես վերջինս, որը արտակարգ շնորհալի ու աշխատասեր պատանի է և, հավանաբար, կգերազանցի ուսուցչին:

Կանցնեն տարիներ և մեծ հռչակի հասնելով, Անտոնիո Ստրադիվարիուսը կմտատանջվի նույն հարցով՝ որդիները՝ Ֆրանչեսկոն և Օմոբոնոն նոր բան կասե՞ն այդ սրբազան գործում, թե՞ կպատճենահանեն իր ջութակները:

Իզուր չէին անհանգստանում հանճարեղ վարպետները. իտալական ջութակների ոսկե դարը վերջացավ նրանց մահով: Կարելի է ջանասիրությամբ կրկնել նրանց ջութակների չափսերն ու ձևերը, փայտըն ու լաքը, բայց ինչպե՞ս հաղորդել հին ջութակների փայլն ու հնչեղությունը: Դա, իրոք, անհնար է: Ինչպե՞ս գտնել կախարդական հնչյունների գաղտնիքը:

## ՖԻԶԻԿԱՅԻ ՀԵՏ ԴԱՇԻՆՔ ԿՆՔԱԾ

Ստրադիվարիուսի հանելուկը բացահայտելու փորձերը չէին դադարում: 19-րդ դարի առաջին կեսին Փարիզում Ժան Բատիստ Վիյոմն ստեղծեց կտընտավոր գործիքների արհեստանոց: Նրա պատրաստած ջութակները չնայած լավն էին, բայց թերություն ունեին. տոնը կտրուկ էր և թույլ փոփոխվող:

Վիլյոմին օգնության հասավ ֆիզիկոս, ակուստիկայի մասնագետ Ֆելիքս Սավարը: Նա հետաքրքրվում էր լարային գործիքների պատրաստման ֆիզիկական հիմունքներով, նրանց ձայնային ռեզոնանսի ուսումնասիրությամբ: Այսպես առաջացավ ջութակի վարպետի և ֆիզիկոսի դաշինքը:

Դուք, իհարկե, գիտեք, թե ինչ է ռեզոնանսը: Երբ որևէ մարմնի հաղորդում ենք ուժային ազդակ (հարված, հրում և այլն), այն ոչ թե միանգամից հանգըստանում է, այլ տատանվում է որոշ ժամանակ: Այդ տատանումների հաճախականությունը կախված է մարմնի չափերից և նյութի հատկությունից: Տատանումներ կարելի է առաջացնել ոչ միայն ստեպ-ըստեպ ազդելով, այլև անընդհատ, այսինքն՝ տատանման օգնությամբ: Երբ իրար են մոտենում ազդող և առաջացած տատանումները, վերջինիս ամպլիտուդան մեծանում է՝ տեղի է ունենում ռեզոնանս: Ձայնային հաճախականության ժամանակ ռեզոնանսի հետևանքով ձայնն անմիջապես ուժեղանում է, դառնում բարձր:

Ամեն մի իր ունի իր սիրած հաճախականությունը: Երաժշտական գործիքը սակայն պետք է նրբորեն հակազդի տարբեր բարձրություններ ունեցող ձայնային հաճախականություններին, այլապես անհնար կլինի նվագել նույնիսկ նոտային այբուբենը:

Պարզվեց, որ իտալացի վարպետների ջութակները տարբեր հաճախականությունների անթերի ձայնադարձիկ են: Սավարը զարմանքով իմացավ, որ Գվառներին և Ստրադիվարիուսը, չնայած նույնիսկ չէին լսել ակուստիկայի մասին որպես գիտության, սակայն բնազդաբար օգտվել են ակուստիկայի օրենքներից: Ջութակի իրանի ամեն մաս, սկսած փայտի ընտրությունից (ավելի հաճախ օգտագործել են եղևնու և թխկենու տարբեր տեսակներ), աշխատում է անհրաժեշտ ռեզոնանսով: Ահա թե ինչու հերիք չէ միայն ճշգրտությամբ պատճենահանել դասական ջութակի ձևերը. անհրաժեշտ է իմանալ նրա մասերի հաստությունը, որոնք տարբեր են ամեն մի նմուշի համար: Լաքը, որի գաղտնիքն այնպես պահպանում էին հին վարպետները, միայն զարդարանքի համար չէ: Բանը նրանումն է, որ զույգ դեկաները (դեկա-լարային երաժշտական գործիքների մեջ ռեզոնանսն ուժեղացնող տախտակ), որոնք պատրաստված են տարբեր եղևնիներից, տարբերվում են իրենց արձակած ձայնային հաճախականությամբ: «Կոշտ» փայտը քամիչ է հանդիսանում ցածր հաճախականության համար, իսկ «փափուկ» փայտը թողնում է այդ հաճախականությունը, բայց արգելք է դառնում բարձր տոների համար: Երկու դեպքում էլ անհրաժեշտ է հաճախականության դիապազոնի ուղղում: Այդ դերն էլ կատարում է լաքը. մի ջութակին հաղորդում է խստություն, մյուսին՝ մեղմություն:

Սավարը շատ բան հասկացավ, բայց, դժբախտաբար, քիչ բան կարողացավ անել՝ անհրաժեշտ գործիքների բացակայության պատճառով:

## ՆՈՐ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒՄՆԵՐ

Այնտեղ, ուր կանգ առավ Սավարը, հարյուր տարի անց իրենց հետազոտությունները սկսեցին սովե-



## ՀԱՅԵԼՈՒ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Մեր թվարկությունից դեռ երեք հազար տարի առաջ մարդիկ գործածել են բրոնզե և պողպատե հայելիներ: Հետագայում դրանց փոխարինեց արծաթե հայելին, իսկ ավելի ուշ՝ Հռոմում ստեղծվեց ապակե հայելին, ապակին փակցնում էին արճճի կամ անագի բարակ շերտի վրա:*

*16-րդ դարում Վենետիկի հանրապետությանը պատկանող Մուրանո կղզու բնակիչները, որոնք մեծ համբավ ունեին իբրև ապակեգործներ, ստեղծեցին այժմյան հայելու նախատիպը: Ապակեգործությունը համարվում էր պետական գաղտնիք, և յուրաքանչյուր վարպետ գտնվում էր խիստ հսկողության տակ: Միայն 17-րդ դարում ֆրանսիացիներին հաջողվեց, կաշառելով Վենետիկի վարպետներից մեկին, ձեռք գցել հայելի պատրաստելու գաղտնիքը: Ֆրանսիայում, չափազանց գաղտնի, սկսեցին ապակու գործարան կառուցել: Սակայն Վենետիկի լրտեսները քնած չէին: Մինչ գործարանը կսկսեր աշխատել, սպանեցին գաղտնիքն իմացողին: Բայց, այնուամենայնիվ, ֆրանսիացիներին հաջողվեց գործարանը բացել: Այն ժամանակվա հայելիները աչքի չէին ընկնում ո՛չ որակով, ո՛չ էլ չափերով: Միայն 17-րդ դարի երկրորդ կեսին ֆրանսիացիներն սկսեցին մեծ չափերի հայելիներ արտադրել:*

*Այժմյան հայելիները չափազանց ճշգրիտ են և բազմազան իրենց ձևերով: Գոյություն ունեն գունավոր՝ ոսկեգույն, վարդագույն, դեղին և երկնագույն հայելիներ:*

տական ֆիզիկոսները, որոնք զինված էին կատարելագործված հզոր սարքավորումներով: Սակայն նրանց աշխատանքն էլ ավելի բարդ էր: Պետք էր ոչ թե կրկնել Ստրադիվարիուսին և մի քանի տասնյակ ջութակ պատրաստել, այլ ստեղծել նրանց բարձրորակ մասսայական արտադրությունը:

1951 թվին Բ. Ա. Յանկովսկին ստեղծում է իր «ձայնային ճառագայթման լուսապատկերի միջոցով ջութակի օբյեկտիվ գնահատման մեթոդը»: Անընդհատ փորձեր էին կատարվում: Ստրադիվարիուսի ջութակը տեղադրվեց հատուկ սենյակում, դեկայի կենտրոնում ամրացրին շիմշատի փայտից պատրաստված «ատամ»: Փոքրիկ մետաղագնդիկը կախման կետից պոկվելով՝ հարվածում էր «ատամին»: Ջութակը ձայնային տատանումներ էր տալիս, որոնք իսկույն արձանագրում էր սպեկտրոգրաֆը, ցույց տալիս տեմբրի կազմությունը:

Ուսումնասիրություններից հայտնի դարձավ, որ ջութակի ձայնի դինամիկան կախված է դեկայի և հատակի առաձգականությունից: Ջութակագործության մեջ մուտք գործեցին ֆիզիկայի հասկացություններ. E՝ առաձգականության մոդուլ և P՝ նյութի ամրություն: Հետո ապացուցվեց, որ ջութակի տեմբրը կարելի է փոխել՝ փոփոխելով դեկայի հաստությունը: Ժամանակակից հաստաչափը կարող է ցույց տալ նորմայից միլիմետրի հարյուրերորդական չափով շեղումը:

Մնում էր միայն գիտության բոլոր կանոններով պատրաստել ջութակ:

## «ԺԱՄԱՆԱԿԻ ՄԵՔԵՆԱՆ»

Այսպիսի ջութակ պատրաստեցին նոր կտրված եղևնուց: Ստուգող երաժիշտները շատ հիացական խոսքեր ասացին: Սակայն մի քանի տարի անց, երբ նորից փորձեցին ջութակը, շատ զարմացան, երբ անհրաժեշտ հնչյունների փոխարեն լսեցին ինչ-որ խռպոտ խզզոցներ: Այսպես պարզ դարձավ, որ երիտասարդ ծառի փայտը ժամանակի ընթացքում փոփոխության է ենթարկվում: Փոխվում է ջութակի առաձգականությունը և հաստությունը, աճում է ներքին լարվածությունը: Հիշեցին, որ Ստրադիվարիուսը օգտագործում էր հարյուրամյա փայտեր, որոնք ո՛չ խոնավություն էին տեսել, ո՛չ էլ արևի ճառագայթներ: Բայց որտեղի՞ց կարող էին այդպիսի փայտ ճարել, այն էլ մեծ քանակությամբ՝ ջութակների մասսայական արտադրության համար: Գիտնականները կարողացան փայտը հնացնել... արհեստական ձևով: Դա շատ բարդ և երկարատև պրոցես է, որի ընթացքում թարմ փայտը «դառնում» է 300-ամյա:

Միայն երկարամյա օգտագործումից հետո ջութակը կարող է արձագանքել կնտնտոցի յուրաքանչյուր շարժմանը: Հատուկ հաստոցի միջոցով այդ պրոբլեմը ևս իր լուծումը գտավ: Հաստոցի վրա ամրացված ջութակի լարերի վրայով անընդհատ շարժվում է փոքրիկ աղեղը: Մի օրվա ընթացքում նա այնքան է շփվում լարերին, ինչքան կնտնտոցը կարող է կատարել մի քանի տարվա ընթացքում:

Այժմ արդեն կարելի է ջութակ պատրաստել: Ֆիզիկոսները կատարել են իրենց խնդիրը:




## ԲԱՐԴԻՆ

*ԱՆԱՀԻՏ ԹԱՐՅԱՆ*

Բարդին կատարն
Օրորում,
Խաս շորերում
Ծորորում,
Իր զով շունչը
Ծոգ օրին
Նա տալիս է
Բոլորին:
Զմրուխտ շորի
Ծալքերում,
Տե՛ս, մի բույն է
Երևում.
Այդտեղ ուրախ,
Բախտավոր,
Թևերի տակ
Իրենց մոր,
Ապրում են գոհ,
Անփորձանք,
Արագիլի
Երեք ձագ:
Իսկ նրբիրան
Բարդին բոց,
Կարծես լինի
Օրորոց:

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

# ԷՐՈԶԻԱՆ ԲՆՈՒԹՅԱՆ ՄԵԾԱԳՈՒՅՆ ՉԱՐԻՔՆ Է

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հողն անսպառ բարիքի աղբյուր է, մեր ամենաթանկ կապիտալը:

Մարդու աշխարհ գալու օրից մինչև այսօր՝ տեխնիկայի և գիտության աներևակայելի առաջընթացի առկայությամբ, մարդկությունը իր գոյության համար անհրաժեշտ համարյա բոլոր սննդամթերքները և այլ նյութերը հողից է ստանում:

Սակայն քամիների և մանավանդ ջրերի կողմից հողը պարբերաբար հողմահարվում ու ողողվում է և քշվում տարվում համաշխարհային օվկիանոս: Այդ երևույթը կոչվում է էրոզիա:

Էրոզիան միլիոնավոր տարիների պատմություն ունի: Այն առաջանում է բնական և արագընթաց ձևերով: Բնական՝ երկրաբանական էրոզիայի զարգացումը տեղի է ունենում միանգամայն օրինաչափ կերպով և կանխել այն ոչ ոք չի կարող: Բնական էրոզիան գործում է անսահմանորեն դանդաղ, մշտապես, և չի խախտում բնության ընդհանուր հաշվեկշիռը: Այլ է ոչ բնական՝ արագընթաց էրոզիան, որը առաջացել է մարդու անխոհեմ գործունեության հետևանքով և ահավոր, երբեմն անուղղելի վնասներ է հասցնում բնությանը:

Ներկայումս, քաղաքակրթության զարգացման հետ միասին, արագընթաց էրոզիան ավելի է ուժեղացել: Դրան նպաստում են երկրագործության ոչ ինտենսիվ սիստեմները, անտառների զանգվածային հատումները, ոռոգման ցանցի ընդլայնումը, անասունների գլխաքանակի ավելացումը, դրա հետ կապված արոտավայրերի գերարածեցումը և այլն:

Երկրագործության ոչ ճիշտ սիստեմների կիրառման հետևանքով այժմ երկրագնդի վրա ամենուրեք բերքատու վարելահողերի տարածությունը արագությամբ կրճատվում է:

Էրոզիային մեծ չափով նպաստում են հատկապես հորդառատ, հեղեղային բնույթի անձրևները: Նման դեպքում ընդամենը մի քանի ժամվա ընթացքում հսկայական բերրի հողաշերտեր են քշվում հեռացվում դաշտերից, անուղղելի վնաս հասցնելով գյուղատնտեսությանը: Հաշված է, որ արագընթաց էրոզիան ամեն տարի ԱՄՆ-ի տնտեսությունները զրկում է 220 հազար հեկտար բերրի հողերից: Ամեն օր էրոզիան ԱՄՆ-ի դաշտերից անվերադարձ կերպով քշում տանում է 2—7 միլիարդ տոննա բերրի հող: ԱՄՆ-ում՝ Լոս-Անջելոս քաղաքի շրջանում մթնոլորտային տեղումներից առաջացած ջրային հոսանքները մեկ հեկտարից քշում տանում են տարեկան 6-ից 144 տոննա հող, Հնդկաստանում՝ Գանգեսի ավազանում այդ թիվը կազմում է 36, Ալժիրում՝ Ուեդա և Ուջդա գետերի ավազաններում՝ 45-ից 150 տոննա:

Իսկ որքա՞ն բերրի հողեր են դեպի օվկիանոսները քշում աշխարհի բոլոր գետերը միասին վերցրած: Գիտնականները հաշվել են, որ եթե բոլոր գետերի կողմից մեկ տարվա ընթացքում քշվող հողը և մյուս կոշտ մասնիկները հավաքվեին մի ֆանտաստիկ բուրգի մեջ, ապա դրա բարձրությունը, լայնությունը և երկարությունը հավասար կլինեին... 15 կիլոմետրի: Այդ նշանակում է, որ բուրգի գագաթը անմատչելի կլիներ նույնիսկ ամենաբարձր ամպերի համար:

Հաշվարկված է, որ անցած 150 տարիների ընթացքում ԱՄՆ-ում էրոզիայի հետևանքով շարքից մասնակիորեն կամ լրիվ դուրս են եկել ոչ պակաս քան 114 միլիոն հեկտար բերքատու հողեր, բացի այդ, ավելի քան 313 միլիոն հեկտար հող ենթարկվել է մասնակի էրոզիայի: Միայն 1939 թվականին ԱՄՆ-ի հողագործությունը էրոզիայի հետևանքով կորցրել է 400 միլիոն դոլլար:

Բուսական ծածկոցը այն հուսալի զրահն է, որը հողերը պաշտպանում է արագընթաց էրոզիայից: Բազմաթիվ ուսումնասիրությունները ցույց են տվել, որ փարթամ բուսականությամբ ծածկված հողերը համեմատաբար դանդաղ են ենթարկվում էրոզիայի: Մինչդեռ էրոզիան մոլեգնում է բնական բուսածածկոցից զրկված հողակտորներում: Քամին և ջուրը, որոնք սովորաբար հողի բարեկամներն են, այս դեպքում վերածվում են դաժան թշնամիների: Քամին, որ օվկիանոսներից խոնավություն էր բերում, այժմ բուսածածկոցից զուրկ հողի փոշիացած զանգվածներ է քշում տանում, իսկ ջուրը քայքայում, տանում է այն հողը, որին կյանք էր տալիս առաջ: ԱՄՆ-ի Օհայո նահանգում կատարված փորձերից պարզվել է, որ 20 սմ հաստություն ունեցող հողերի բերրի շերտը էրոզիայի ենթարկվելու համար անհրաժեշտ է անտառոտ վայրում՝ 174 հազար, տափաստաններում՝ 29 հազար տարի, իսկ ռացիոնալ մշակվող դաշտերում ընդամենը 15 տարի: Դրա պատճառն այն է, որ բուսականությունը դանդաղեցնում է ջրի մակերեսային հոսքը և նրա մի մասը պահում է իր զանազան օրգաններով:



Վերջին հարյուրամյակներում էրոզիայի հիմնական պատճառը անտառների ոչնչացումն է: Արևվադարձային երկրներում անտառները հատում են զանազան տեխնիկական կուլտուրաներ մըշակելու համար (սուրճ, արախիս, հևեյա, բամբակ, թեյ): Արևադարձային հորդառատ անձրևները քշում տանում են հողը, որը անտառային բուսականության ոչնչացման հետևանքով մնացել է անպաշտպան: Գյուղատնտեսական կուլտուրաները, թեկուզ և բազմամյա, ի վիճակի չեն պաշտպանելու հողը էրոզիայից:

Արագընթաց էրոզիայի մյուս հիմնական պատճառը արոտավայրերի գերարածեցումն է: Յուրաքանչյուր հողակտոր ընդունակ է կերակրելու որոշակի թըվով խոտակեր կենդանիների: Երբ տվյալ հողակտորի վրա կենդանիների թիվը ավելանում է, անխուսափելիորեն առաջանում է գերարածեցում, քանի որ խախտվում է հավասարակշռությունը արածեցման և բույսերի վերաճի: Որպես դրա անխուսափելի հետևանք, սկսվում է արագընթաց էրոզիան: Անասունների գլխաքանակի ավելացման դեպքում կենդանիները ոչնչացնում են ոչ թե խոտի վերաճը, «տոկոսը», այլ հիմնական բուսածածկոցը, այսինքն՝ «հիմնական կապիտալը»: ԱՄՆ-ի Այդախո նահանգում կատարված ուսումնասիրությունները ցույց են տվել, որ գերարածեցված մարգագետիններում ուժեղ անձրևների հետևանքով մակերեսային հոսքը կազմում է 61 տոկոս և մեկ հեկտարից լըվացվում տարվում է մինչև 16 տոննա հող այն ժամանակ, երբ հավասարաչափ արածեցվող մարգագետիններում մակերեսային հոսքը կազմում է 0,5 տոկոս և մեկ հեկտարից ընդամենը տարվում է 7 կգ հող: Այս տեսակետից չափազանց ուսանելի է այծերի օրինակը, որոնք Միջերկրածովյան շրջաններում գերարածեցման ենթարկելով և համարյա ոչնչացնելով բուսականությունը, հսկայական հողատարածությունների քայքայման, արագընթաց էրոզիայի պատճառ են հանդիսացել:

Երբ գյուղատնտեսությունը գտնվում է զարգացման ցածր մակարդակի վրա, ապա դա առաջին հերթին նպաստում է արագընթաց էրոզիային: Ջրից՝ հեղեղային տիպի անձրևներից բացի, երկրագործության սխալ սիստեմների դեպքում, քամին ևս էրոզիայի պատճառ է հանդիսանում: 1934 թվականի մայիսի 12-ը ԱՄՆ-ի հողագործների համար ընդմիշտ կմնա որպես մեծագույն աղետի օր: Հրեշավոր ուժի քամին Կանզաս, Օկլահոմա և Կոլորադո նահանգների տերիտորիայում էրոզիայի ենթարկեց գյուղատնտեսական մշակույթի տակ գտնվող հողերը: Փոշու հըսկայական փոթորիկը ընդգրկեց ավելի քան 450 հազար քառակուսի կիլոմետր տարածություն: Փոշու ամպերը հասել էին մինչև 5000 մետր բարձրության: Մի քանի ժամվա ընթացքում քամին տեղափոխեց ավելի քան 200 միլիոն տոննա հող, որոշ վայրերում լրիվ ոչնչացավ 25 սմ հաստության վարելահողը: Սա ԱՄՆ-ի կյանքում ամենաահավոր տընտեսական աղետներից մեկն էր:

Այս բոլոր փաստերը խոսում են այն մասին, որ մարդու անհեռատես գործունեությամբ խախտվել է բնության նախնական, միլիոնավոր տարիների ընթացքում հաստատված հավասարակշռությունը:

Մինչդեռ կան հուսալի միջոցներ էրոզիայի դեմ պայքարելու համար: Անհրաժեշտ է պահպանել ու ընդարձակել անտառապատ տարածությունները, անտառապատել մերկ լանջերը, ամրացնել ձորակներն ու հեղեղատները, ճիշտ օգտագործել արոտավայրերը, կիրառել երկրագործության ինտենսիվ, առաջավոր սիստեմներ: Նման միջոցառումների նպատակասլաց կիրառման դեպքում մարդը կկարողանա կանխել կամ գոնե նվազագույնի հասցնել արագընթաց էրոզիան՝ մարդկության մեծագույն չարիքը:

## ԾԱՌԱՏՆԿՄԱՆ ԳՈՐԾԸ ՄԵՐ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Մեր հանրապետության վարելահողերի մեծ մասը գտնվում են լեռների մերկ լանջերին, այդ պատճառով էլ հողի ողողումը և նրա աղքատացումը կատարվում է շատ արագ: Դեռ երկու տարի առաջ կատարված հաշվումները ցույց տվին, որ միայն Մարտունու և Գորիսի շրջաններում շուրջ 11 հազար հեկտար վարելահող դուրս է եկել շարքից, այսինքն մշակության համար այլևս պիտանի չէ: Այս կամ այն չափով նույն երևույթը մենք տեսնում ենք նաև Մեղրու, Արարատի, Ազիզբեկովի, Սիսիանի, Եղեգնաձորի և այլ շրջաններում:

Սա մեծ չարիք է մեր հանրապետության համար, մանավանդ որ մենք հողասակավ ենք. մեր յուրաքանչյուր բնակչին ընկնում է 0,18 հ. վարելահող, որ 4 անգամ պակաս է համամիութենական միջինից:

Ահա թե ինչու մենք պետք է պայքարենք յուրաքանչյուր հեկտար հողը լիարժեք պահելու համար:

Տարվո՞ւմ է այդ պայքարը: Այո՛, տարվում է պլանային կարգով:

Ով անցյալում աշխատել է Հոկտեմբերյանի շրջանում, նա ծանոթ պիտի լինի փոշու այն ահռելի ամպերին, որ բարձրանում էին մերկ դաշտերից: Ամռա-



նը, երբ շիկանում էր Արարատյան դաշտը, կեսօրից հետո, Արագածի սառն օդը վիթխարի ուժով խուժում էր Արաքսի հովիտը և դրանից փոշու այնպիսի փոթորիկ էր բարձրանում, որ պայծառ օրը մթնում էր և մարդիկ ու կենդանիները շնչահեղձ էին լինում: Հրազդանի և Քասախի միջև ընկած «Հայկական խոպանից» նույնպիսի փոշու ամպեր էին արշավում Երևանի և Էջմիածնի վրա:

Քամին սրբում տանում էր հողը, նրա վերին, ամենաբերրի շերտը: Ինչո՞ւ: Ինչո՞ւ այդ երևույթը չկա Լոռիում, Իջևանում: Որովհետև այնտեղ անտառներ կան: Անտառը չի թողնում, որ հողը քամու բերանն ընկնի:

Կար ժամանակ երբ Արագածի հարավային լանջերում անտառներ էին ձգվում դեպի արևելք, դեպի պատմական Կոտայք, այնտեղից էլ դեպի Վեդու լեռները և Ուրծի լեռնաշղթան: Եղջերվի եղջյուրներ են գտնվել Արարատի շրջանի Կաբախլու և Զնջրլու գյուղերի հանդերում: Եղջերուն անտառի կենդանի է, ի՞նչ գործ ունի նա այդ մերկ վայրերում: Նշանակում է, հնում այդ վայրերը պատած էին անտառներով: Վերացան անտառները, սկսվեցին հողի ինտենսիվ ողողումները անձրևներից և նրա հողմահարվելը՝ աղքատացումը քամու միջոցով:

Հիմա այդ մերկ լեռնալանջերը և Հայկական խոպանը ծածկվում են անտառներով ու պտղատու այգիներով: Արևմուտքից Ախուրյանի ջրերն են գալիս ոռոգում Արագածի հարավարևմտյան լանջերը: Արևելյան փեշերն ու Քասախից Հրազդան մեկնված մերկ քարքարոտները ջրվում են Սևանի ջրերով: «Ապարանի ծովը» կանաչով է ծածկում Արայի լեռան հարավային փեշերը: Հոկտեմբերյանի երբեմնի փոշոտ տափաստանին Արաքսն է օգնության եկել: Եվ տասնյակ հազարավոր հեկտար բռնող այդ ամբողջ տարածությունները ծածկըվել են պտղատու այգիներով: Այդ է պատճառը, որ նոր սերնդին անծանոթ են փոշու այն ահռելի ամպերը, որոնք որպես բնության պատիժ, ծանրացել էին նախալեռնային շրջանների և Արաքսի հովտի վրա:

Ահա թե ինչ է արվում մեզ մոտ հողի էրոզիան կասեցնելու համար:

Իսկ անտառնե՞րը, անտառատնկո՞ւմը: Դրանց դերը ցույց տալու համար միայն մեկ օրինակ բերեմ: 1946 թվականի հեղեղը 85 միլիոնի վնաս հասցրեց Երևանին և նրա շրջակայքին: Հեղեղը եկավ Գետառի ջրաբաշխ ավազանից՝ Գեղամա լեռնաշղթայի հարավարևմտյան լանջերից: Մինչ այդ դարձյալ հեղեղներ էին եղել, Երևանը միշտ ենթակա էր հեղեղի վտանգին: Ինչո՞ւ: Որովհետև Գետառին ջուր տվող հանդերը մերկ էին:

Հիմա Արգնու ձորից մինչև Գառնու հանդերը՝ 20—25 կիլոմետր լայն ճակատով լեռնալանջերը, պատած են մեր պետության գցած նոր անտառներով: Այդ ամբողջ տարածության վրա հողի ողողումները կանգ առան և վերացավ մայրաքաղաքի հեղեղման վտանգը:

Հայաստանում ճամփորդելիս նկատե՞լ եք, որ լեռների լանջերին այս ու այնտեղ իրար զուգահեռ խրամատներ կան՝ ծերունու ճակատի զուգահեռ կնճիռների նման: Որտեղ այդպիսի խրամատներ տեսնեք, իմացեք, որ այնտեղ նոր անտառ է գցվում, տնկիները խրամատների ներսում են: Այդ խրամատները չեն թողնում, որ անձրևաջուրը լանջերի հողը սրբի տանի: Դրանք էրոզիայի դեմ մեր պետության ձեռնարկած այն միջոցառումներից են, որոնց իրագործման վրա Հայաստանի կառավարությունը միայն ներկա հնգամյակում ծախսելու է 32 միլ. ռուբլի: Անտառների ընդարձակումը մեծ տեղ է գրավում այդ միջոցառումների շարքում: Միայն վերջին տարիներին Հայաստանում շուրջ 30 հազար հեկտար անտառ է տնկվել:

Ի՞նչ կտան մեզ նոր անտառները:

Բացի շինափայտից և գեղեցկությունից, ուր անտառ կա, կդադարի հողի ողողումը. *անտառոտ հողի էրոզիա չի լինում*, անձրևաջուրը ծծվում է անտառի փտած խաշամի մեջ: Հաշված է, որ եթե լանջը զուրկ է անտառից, նրա վրա թափված անձրևաջրի 60 տոկոսն է հոսում, ցած գնում, իսկ անտառոտ լանջից՝ միայն 19 տոկոսը: Հաշված է նաև, որ էրոզիայի միջոցով Հայաստանում ողողվում տարվում է տարեկան 20 միլ. տոննա հող (երբեմն՝ հեկտարից 340 տոննա): Այդ ամբողջը եթե մի տեղ հավաքենք և փռենք 20 սմ հաստությամբ, կանի 8—10 հազար հեկտար որակյալ վարելահող: Գետերի միջոցով դուրս տարվող այդ հսկայական հողի մի մասը անտառները կպահեն տեղում:

Անտառները նաև կբարելավեն հանրապետության կլիման, այն կդարձնեն ավելի առողջարար, քանի որ հաշված է, որ անտառապատ վայրերում օդի մեջ փոշու և մրի պարունակությունը մերկ վայրերի համեմատությամբ պակաս է 23 անգամ:

Ահա ինչպիսի վիթխարի նշանակություն ունի անտառներով աղքատ մեր երկրի համար ծառատնկման այն գործը, որին այնպես եռանդով լծված են նաև Հայաստանի պիոներներն ու դպրոցականները:

# ՃԱՆԱՉԻ՛Ր ԵՎ ՀԱՎԱՔԻ՛Ր ԴԵՂԱԲՈՒՅՍԵՐԸ

Վ. ՈՍԿԱՆՅԱՆ
*Կենսաբանական գիտ. թեկնածու*

## ԼՈՇՏԱԿ



Պատկանում է դդմազգիների ընտանիքին: Բազմամյա խոտաբույս է, հաստ՝ շաղգամաձև, երբեմն երկճյուղանի արմատով: Արմատը մուգ է, արտաքինից՝ դեղնավուն, իսկ ներսից՝ սպիտակ: Արմատից վեր են բարձրանում սողացող կամ փաթաթվող, երկար՝ մինչև 5 մետրի հասնող մի քանի ցողուններ, որոնց վրա հերթադիր դասավորված են հնգաբլթակ նրկարակոթուն տերևները: Ցողունի վրա՝ տերևների դիմացից, դուրս են գալիս բեղիկները, որոնց օգնությամբ ցողունը ամրանում ու փաթաթվում է շրջապատի առարկաներին:

Լոշտակի ծաղկափթությունը նոսր է, զարգանում է տերևածոցերում: Ծաղիկները կանաչասպիտակավուն են կամ դեղնավուն: Պտուղը հյութալի, սկզբում՝ կանաչ, ապա սև հատապտուղ է: Ծաղկում է ամռան ամիսներին:

Թունավոր բույս է, աճում է քարքարոտ հողերում: Շատ տարածված է Աշտարակի, Վեդու, Արտաշատի, Մեղրու, Ազիզբեկովի, Աղինի, Ղուկասյանի շրջաններում, Սևանի, Երևանի շրջակայքում և այլն:

Դեղագործական նպատակների համար օգտագործում են բույսի արմատը: Այն պարունակում է մի շարք գլյուկոզիդներ և բուսաջրի ու մզվածքի ձևով կիրառվում է որպես ցավամոք, արյունարգել և որպես հազը թուլացնող միջոց: Էլյնորեն կիրառվում է նաև մի շարք այլ հիվանդությունների դեպքում:

Արմատը հանում են աշնանը, մաքրում, կտրատում և չորացնում են հետագա օգտագործման համար:

## ՕՇԻՆԴՐ

Բազմամյա խոտաբույս է, թավշոտ, որը բույսին արծաթի գույն է տալիս: Ուղղաձիգ ցողունը հասնում է մինչև մեկ մետրի: Կոճղարմատը կարճ է, որից դեպի հողն են խորանում ճյուղավորված հավելյալ արմատները:

Մերձարմատային տերևները ունեն երկար կոթուններ, իսկ ցողունի տերևները՝ կարճ: Ծաղկափթությունները գնդաձև դեպի ցած խոնարհված զամբյուղիկներ են:

Շատ տարածված է Սևանի ավազանում, Դիլիջանի, Կիրովականի, Արթիկի, Աղինի, Ազիզբեկովի, Սիսիանի, Մեղրու շրջաններում, Ծաղկաձորում, Հանքավանում, Երևանի ու Լենինականի շրջակայքում: Աճում է քարքարոտ մարգագետիններում, անտառի բացատում, ճանապարհի եզրերին ու բնակավայրերի շրջակայքում:

Որոշ պատրաստուկներ կիրառվում են բրոնխիալ ասթման, ռևմատիզմը, էկզեմաև և ռենտգենյան ճառագայթներից առաջացած այրվածքները բուժելու համար:

Ժողովրդական բժշկության մեջ օշինդրը օգտագործվում է որպես ստամոքսահյութի սեկրեցիան կանոնավորող, լյարդի, լեղապարկի հիվանդությունները ու անքնությունը բուժելու միջոց:

Օշինդրը մեծ կիրառություն ունի նաև անասնաբուծության ու լիկյորների արտադրության բնագավառում:

Դեղագործական նպատակներով օգտագործվում են հիմնականում օշինդրի տերևները, իսկ երբեմն էլ՝ բույսի գագաթային մասը: Օգտագործում են մզվածքի, ջրաթուրմի ու դեղահաբերի ձևով:

Հումքը պետք է հավաքել ծաղկումից անմիջապես առաջ և չորացնել լավ օդափոխվող միջավայրում:



## ԱՐՋԸՆԿՈՒՅԶ



Միամյա բույս է մինչև մեկ մետր բարձրությամբ: Պատկանում է մորմազգիների ընտանիքին: Ցողունը կանգուն է, ճյուղավորված: Տերևները խոշոր են, ձվաձև, կարճ կոթուններով: Միայնակ, խոշոր ծաղիկները նստած են տերևածոցերում: Ծաղկապսակը ձագարաձև է, սպիտակ: Պտուղը նույնպես խոշոր է, ձվաձև պատած սուր փշիկներով:

Ծաղկում է հուլիս-օգոստոս ամիսներին: Աճում է գլխավորապես աղբոտ վայրերում, ճանապարհների եզրերին: Տարածված է Շամշադինի, Ղափանի, Ստեփանավանի, Նոյեմբերյանի ու Ազիզբեկովի շրջաններում:

Դեղագործության մեջ օգտագործվում են արջընկույզի տերևները, որոնց կիրառումը բժշկության մեջ պայմանավորված է նյարդային սիստեմը հանգստացնող հատկությամբ: Արջընկույզի պատրաստուկները օգտագործում են որպես հակաջղաձգային և թմրեցնող դեղամիջոցներ: Դրանք տրվում են գլխավորապես նյարդախտների, սուր և խրոնիկական ռևմատիզմի, բրոնխիալ շնչահեղձության և այլ հիվանդությունների դեպքում:

Արջընկույզի բոլոր օրգաններն էլ խիստ թունավոր են, ուստի նրա հետ գործ ունենալիս պետք է շատ զգույշ լինել, իսկ վերջում ձեռքերը խնամքով լվանալ:

Տերևները հավաքում են ծաղկման շրջանում: Այդ ժամանակ դեղանյութի պարունակությունը տերևներում առավելագույն չափի է հասնում: Հումքը չորացվում է մթնեցրած և լավ օդափոխվող սենյակներում:

## ԱՐՅՈՒՆԽՄԻԿ

Բազմամյա խոտաբույս է, պատկանում է վարդազգիների ընտանիքին: Ունենում է տերևների մերձարմատային վարդակ և հորիզոնական տարածվող հաստ, փայտացած կոճղարմատ: Վերջինից դեպի հողն են խորանում բարակ ու երկար արմատները: Ցողունը սովորաբար միայնակ է, ուղղաձիգ, գագաթային մասում ճյուղավորված: Տերևները փետրաձև են, իսկ տերևիկները սրտաձև, ատամնավոր: Ծաղիկները երկսեռ են, մուգ կարմիր գույնի ու խմբերով, որոնք ցողունի ծայրին առաջացնում են գլխիկներ:

Ծաղկում է ամռան ամիսներին: Աճում է անտառի բացատներում, գետերի ափերին: Նրան կարելի է հանդիպել նաև ենթալպյան գոտու մարգագետիններում, լեռնային տափաստաններում և այլուր: Շատ տարածված է Կամոյի, Ստեփանավանի, Կիրովականի, Մարտունու, Աղինի, Ղուկասյանի, Ամասիայի և Հրազդանի շրջաններում:



Դեղագործության մեջ օգտագործում են արյունխմիկի կոճղարմատն ու արմատները:

Որպես դեղաբույս արյունխմիկը հայտնի է շատ հին ժամանակներից և մեր օրերում էլ լայնորեն կիրառվում է ժողովրդական բժշկության մեջ թոքային ու ստամոքսային արյունահոսությունների դեպքում որպես արյունարգել միջոց, աղիքային կատարի, դիզենտերիայի և շատ այլ հիվանդությունների դեպքում:

Ներկայումս արյունխմիկից պատրաստած դեղահատիկները, լուծույթներն ու եփուկները բժշկության մեջ կիրառվում են նաև մի շարք այլ հիվանդությունների դեպքում:

Կոճղարմատն ու արմատները հանում են բույսի ծաղկաթափման շրջանում և մաքրելուց հետո չորացնում ձեղնահարկերում կամ բացօթյա:

# ԽԱՉԲԱՌ

### ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

1. Լեհական ազգային պար: 2. Սատուռն մոլորակի ամենամեծ արբանյակը: 3. Խոշոր նավահանգիստ Իրաքում: 4. Հունական պետության պաշտոնական անունը: 7. Գերմանացի նշանավոր փիլիսոփա: 10. Էրեբունի քաղաքի հիմնադիրը: 12. Յուպիտեր մոլորակի հայերեն անվանումը: 13. Ռեմբրանդտի նկարը: 14. Գետ Նիգերիայում: 17. Սպորտային ընկերություն: 18. Մայր ցամաք: 20. Գրական ժանր: 22. Ապրանքի մաքուր կշիռը: 23. Լիճ Ֆինլանդիայում:

### ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

5. Փափուկ մետաղ, որ բնության մեջ տարածված է միացությունների ձևով: 6. Ամերիկացի ռեալիստ գրող: 8. Հ. Թումանյանի լեգենդներից: 9. Սովետական Միության հանրապետության մայրաքաղաք: 11. Գետ Յակուտական ԻՍՍՀ-ում, Լենայի աջ վտակը: 13. Լույսի մասնիկ: 15. Արվեստի ճյուղ: 16. Երկրաչափական մարմին: 19. Էլեկտրական հոսանքի ուժի չափման միավոր: 21. Շրջկենտրոն Հայաստանում: 23. Լատինական այբուբենի նախավերջին տառը, որը օգտագործվում է մաթեմատիկայի մեջ: 24. Բազմերանգ ձայներ ունեցող երաժշտական գործիք: 25. Արական ձայն: 26. Պետություն Աֆրիկայի հյուսիսարևմուտքում:

Կազմեց՝ ԳԵՎՈՐԳ ԳԱՍՊԱՐՅԱՆԸ



### ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի 1972 թ. № 7-ում Սուրեն Մուրադյանի «Ազատվածը» բանաստեղծությունը թյուրիմացաբար տպագրվել է Հոբաս-Ալպար անունով:


Լույս է տեսնում 1928 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 8 օգոստոս 1973 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ОРГАН ЦК ЛКСМ АРМЕНИИ И РЕСПУБЛИКАНСКОГО СОВЕТА ПИОНЕРСКОЙ ОРГАНИЗАЦИИ ИМ. В. И. ЛЕНИНА


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Բ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Адрес редакции: Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 09067: Պատվեր՝ 786: Տպաքանակ՝ 80000: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 24/VII 1973 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մնդոյանցի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան—9, Տերյան փ. № 91:

